*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*


ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 9


«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 9

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---



# 1944 ԹՎԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետը և Համկ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն նշում են, որ 1944 թվի պատերազմական դժվարին պայմաններում կոլխոզները, ՄՏ կայանները և սովխոզները, ավելի հաջող քան անցյալ տարի, կատարեցին գարնանացանը, զգալիորեն բարելավեցին դաշտային աշխատանքների որակը, որը հնարավորություն է տալիս ընթացիկ տարում հացահատիկային և գյուղատնտեսական այլ կուլտուրաների լավ բերք ստանալ, ապահովել գյուղատնտեսական մթերքների մթերումների պլանների կատարումը, կուտակել սերմֆոնդերը և ավելացնել աշխօրերի դիմաց կոլխոզնիկներին տրվելիք հացահատիկային և գյուղատնտեսական մյուս մթերքները:*

*Գերմանական օկուպացիայից ազատագրված շրջանների կոլխոզնիկները և կոլխոզ-*

նիկուհիները, ՄՏ կայանների և սովխոզնե-
րի աշխատողները, չնայած թշնամու կող-
մից գյուղատնտեսությանը հասցված մեծ
վնասին, կատարեցին գարնանացանի պետա-
կան պլանը։ Հաջողությամբ ավարտեցին
գարնանային գյուղատնտեսական աշխա-
տանքները և պայմաններ ապահովեցին բար-
ձր բերք ստանալու համար։

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտ-
կոմը գտնում են, որ կոլխոզների, ՄՏ կա-
յանների և սովխոզների բոլոր ուժերը պետք
է մոբիլիզացվեն և ի սպաս դրվեն, որպես-
զի սեղմ ժամկետում և առանց կորուստի
հավաքվի բերքը, ժամանակին կատարվեն
գյուղատնտեսական մթերքների մթերումնե-
րի պլանները և դրանով իսկ, պատերազմի
վճռական ժամանակաշրջանում, Կարմիր
Բանակն ու երկիրը ապահովվեն բավակա-
նաչափ պարենամթերքով, իսկ արդյունա-
բերությունը՝ հումքով։

Բերքահավաքը և գյուղատնտեսական մը-
թերքների մթերումները համարելով համա-
ժողովրդական կարևորագույն գործ, ՍՍՌՄ
Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը տե-
ղական պարտիական, սովետական և հողա-
յին օրգանների առաջ, բոլոր կոլխոզների,



ՄՏ կայանների և սովխոզների առաջ դնում
են հետևյալ խնդիրները.

Բերքահավաքի համար ժամանակին պատ-
րաստել բոլոր կոմբայնները, տրակտորնե-
րը, հնձիչ մեքենաները, լոբոգրեյկաները,
ինչպես նաև ձեռքի գերանդիները, ման-
գաղները և բերքահավաքի այլ ձեռքի ին-
վենտարը։

Բերքահավաքի աշխատանքները կատարե-
լու համար մոբիլիզացնել կոլխոզներում,
ՄՏ կայաններում, սովխոզներում և օժան-
դակ տնտեսություններում եղած ամբողջ
բանվորական ուժը, ճիշտ կազմակերպել
աշխատանքը բերքահավաքի ժամանակ։ Բեր-
քահավաքի աշխատանքները կատարելու գոր-
ծում կոլխոզներին և սովխոզներին օգնելու
նպատակով՝ մոբիլիզացնել քաղաքների,
շրջանային կենտրոնների և բանվորական ա-
վանների բնակչությանը։

Բերքահավաքի աշխատանքներում և գյու-
ղատնտեսական մթերքները պետությանը
հանձնելու գործում ապահովել քաշող ու-
ժի, իսկ համեմատաբար թեթև աշխատանք-
ներում՝ նաև կոլխոզների, սովխոզների ա-
նասնապահական ֆերմաների սակավ մթե-
րատու կովերի և կոլխոզնիկների, բանվոր-

ների ու ծառայողների ուժերի լիակատար ընդգրկումը և ճիշտ օգտագործումը:

Հացաբույսերի բերքահավաքը չձգձգելու համար կոմբայնները և կոլխոզներում, ՄՏ կայաններում ու սովխոզներում եղած բերքահավաքի բոլոր մեքենաներն ու բերքահավաքի մյուս միջոցները անմիջապես աշխատանքի գցել:

Լիակատար պատրաստ վիճակի մեջ դնել լոկոմոբիլները, կալսիչները, ձիաքարշ մեքենաները, հացահատիկ զտող մեքենաները, ավտոմեքենաները, ձիաքարշ տրանսպորտային ինվենտարը, բերքահավաքի առաջին օրերից կազմակերպել դիզումը, հացահատիկի անխափան կալսումը և հացահատիկի ու գյուղատնտեսական մյուս մթերքների անհապաղ հանձնումը պետությանը:

Կազմակերպել բերքի խստիվ հաշվառում ու պահպանություն բերքահավաքի, կալսման ու փոխադրումների ժամանակ, թույլ չտալ բերքի կորուստ ու փչացում, վճռական պայքար մղել անփույթ վերաբերմունքի, հացահատիկի ու գյուղատնտեսական մյուս մթերքների վատնման ու հափշտակման դեմ:

Հատուկ ուշադրություն դարձնել սերմնադաշտերի բերքը ժամանակին հավաքելու



ու կալսելու վրա, ապահովելով ամբողջ սերմանյութի լիակատար պահպանումը:

Ապահովել, որ յուրաքանչյուր կոլխոզ, սովխոզ և օժանդակ տնտեսություն, կառավարության սահմանած ժամկետներում, անպայման կատարեն պետությանը հացահատիկ և գյուղատնտեսական այլ մթերքներ հանձնելու պլանները, այդ աշխատանքը համարելով բոլոր պարտիական, սովետական, մթերող, հողային օրգանների, կոլխոզների, սովխոզների և օժանդակ տնտեսությունների ռազմա-տնտեսական կարևորագույն խնդիրը:

Արդյունաբերական ձեռնարկությունների, քաղաքային կազմակերպությունների ու հիմնարկությունների կողմից, ՄՏ կայանները, կոլխոզները և սովխոզները նորոգող բրիգադներ ուղարկելու, ավտոտրանսպորտ, ձիեր, ավելորդ սարքավորում, պահեստի մասեր, նյութեր և գործիքներ առանձնացնելու միջոցով բազմակողմանի օգնություն կազմակերպել կոլխոզներին, ՄՏ կայաններին ու սովխոզներին՝ բերքահավաքի և պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու ժամանակ:

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և Համկ(բ)Պ Կենտկոմը որոշեցին.

Պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկոմատին, ՍՍՌՄ Սովխոզների Ժողկոմատին, ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին, ՍՍՌՄ Մսեղենի և Կաթնեղենի Արդյունաբերության Ժողկոմատին, Մթերումների Ժողկոմատին, օժանդակ տնտեսություններ ունեցող բոլոր ժողկոմատներին, մարզգործկոմներին, երկրգործկոմներին, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, պարտիայի երկրկոմներին, մարզկոմներին և շրջկոմներին, շրջգործկոմներին, ՄՏ կայանների ու սովխոզների դիրեկտորներին, գյուղսովետների և կոլխոզների նախագահներին.

## I

## ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵԼՈՒ ԵՎ ԱՆՑԿԱՑՆԵԼՈՒ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

1. Նախ քան բերքահավաքը սկսելը պետական ստուգում կատարել և պարզել, թե յուրաքանչյուր շրջան, ՄՏ կայան, կոլխոզ ու սովխոզ ի՞նչպես են նախապատրաստված բերքահավաքին, այդ բանի համար առանձնացնելով ռեսպուբլիկաների ժողկոմսովետների, երկրգործկոմների, մարզգործկոմների, միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմների, պարտիայի երկրկոմների, մարզկոմների, շրջգործկոմների ու պարտիայի շրջկոմների ղեկավար աշխատողներ:

Կոլխոզների, ՄՏ կայանների, սովխոզների ստուգման արդյունքները քննարկել շրջգործկոմներում և պարտիայի շրջկոմներում, իսկ շրջանների՝ մարզգործկոմներում, երկրգործկոմներում, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներում, պարտիայի մարզկոմներում, երկրկոմներում և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներում, անհրաժեշտ միջոցներ ձեռք առնելով բերքահավաքի նախապատրաստման գործում հայտաբերված թերությունները վերացնելու ուղղությամբ:

2. Ապահովել, որ ժամանակին կազմվեն յուրաքանչյուր կոլխոզի, ՄՏ կայանի ու սովխոզի, յուրաքանչյուր տրակտորային ու դաշտավարական բրիգադայի բերքահավաքի աշխատանքային պլանները, այդ պլաններում նախատեսելով կոլխոզներում, սովխոզներում և ՄՏ կայաններում եղած ամբողջ բանվորական ուժի, կոմբայնների, հնձիչ մեքենաների, բերքահավաքի այլ մեքենաների, տրակտորների, քաշող ուժի լրիվ օգտագործումը: Բերքահավաքի

աշխատանքներում օգտագործելու համար ազատել ներտնտեսային աշխատանքներում, օժանդակ ձեռնարկություններում և ճյուղերում զբաղված հնարավոր չափով ավելի շատ աշխատողներ:

3. Նախ քան բերքահավաքն սկսելը ավարտել բոլոր կոմբայնների, տրակտորների, կալսիչ մեքենաների, ձիաքարշ մեքենաների, լոկոմոբիլների, ավտոմեքենաների, բերքահավաքի հատուկ մեքենաների, գերանդիների, մանգաղների և բերքահավաքի այլ ինվենտարի նորոգումը ու դրանք պատրաստ դարձնելը աշխատանքի, նորոգման աշխատանքներում լայնորեն ներգրավելով գյուղական վայրերում և քաղաքներում գտնվող ձեռնարկությունները, արհեստանոցներն ու դարբնոցները: Նորոգված կոմբայնները սարքավորել աշխատանքի ժամանակ հացահատիկը բեռնաթափելու հատուկ հարմարանքներով, հատիկաորսիչներով, հարդադիզիչներով և պառկած հացաբույսերը հնձելու հարմարանքներով, իսկ այն կոմբայնները, որոնք մոտորի կամ խեդերի բացակայության պատճառով չեն կարող օգտագործվել բերքահավաքի ժամանակ, նորոգել կալսման ժամանակ օգտագործելու համար:



Մոտոր չունեցող կոմբայնների խեդերները հարմարեցնել հացաբույսերի հնձման ժամանակ օգտագործելու համար:

Անհրաժեշտ գտնել, որ կոմբայնները պետական հանձնաժողովների կողմից ընդունելիս միաժամանակ շարժման մեջ դնել կոմբայնները և դրա արդյունքով էլ պետք է որոշվի բերքահավաքի համար կոմբայնի պատրաստ լինելու հարցը:

4. Պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկոմատին, ՍՍՌՄ Սովխոզների ժողկոմատին, ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին և ՍՍՌՄ Մսեղենի և Կաթնեղենի արդյունաբերության ժողկոմատին, մարզերի, երկրամասերի ու ռեսպուբլիկաների պարտիական ու սովետական կազմակերպություններին, ՄՏ կայանների ու սովխոզների դիրեկտորներին.

ա) Նախ քան բերքահավաքը սկսելը կոմբայնային յուրաքանչյուր ագրեգատը կոմպլեկտավորել պատրաստված կոմբայնավարով, կոմբայնավարի օգնականով և տրակտորիստներով: Բերքահավաքից առաջ բոլոր կոմբայնավարների հետ կարճատև պարապմունքներ անցկացնել կոմբայնների շահագործման ու տեխնիկական խնամքի հարցերի շուրջը:

բ) Նախ քան բերքահավաքն սկսելը կոմբայնային յուրաքանչյուր ագրեգատի ամրացնել հացաբույսերի և մյուս կուլտուրաների հողամասերը, յուրաքանչյուր ՄՏ կայանի ու սովխոզի կոմբայնային բերքահավաքի հաստատված պլանի համապատասխան, և բերքահավաքն սկսելուց ոչ ուշ քան 5 օր առաջ, բոլոր կոմբայնները և տրակտորները փոխադրել աշխատանքի վայրը:

գ) բերքահավաքի ամբողջ ժամանակաշրջանում կոմբայնային յուրաքանչյուր ագրեգատի ամրացնել կոլխոզնիկների և սովխոզների բանվորների մշտական կազմ՝ ծայրամասերն ու անկյունները հնձելու, վառելանյութ բերելու, հացահատիկը մաքրելու ու չորացնելու գործում կոմբայններին սպասարկելու համար, ապահովելով դրանք հատիկատարիչ մեքենաներով և բավականաչափ քաշող ուժով.

դ) բերքահավաքի ժամանակաշրջանում կոմբայնների ու տրակտորների անխափան աշխատանքն ապահովելու համար յուրաքանչյուր ՄՏ կայանում և սովխոզում կոմբայնային յուրաքանչյուր 10 ագրեգատի համար սարքավորել մեկական շրջիկ արհեստանոց կամ թե կոմբայնային յու-



րաքանչյուր 5 ագրեգատի համար մեկական շրջիկ ձիաքարշ արհեստանոց:

Շրջիկ արհեստանոցները կոմպլեկտավորել նորոգող բանվորների որակյալ կադրերով և կոմբայնային յուրաքանչյուր ագրեգատն ապահովել գործիքով և առավել գործածական պահեստի մասերով, որոնք անհրաժեշտ են տեխնիկական խնամք և դաշտում նորոգում կատարելու համար, ինչպես նաև վառելանյութ լցնելու ինվենտարով և հակահրդեհային միջոցներով:

5. Պարտավորեցնել ՄՏ կայանների և սովխոզների դիրեկտորներին՝ անցկացնել կալսիչների, նավթով աշխատող շարժիչների և լոկոմոբիլների մեքենավարների պատրաստման կարճատև դասընթացներ, եղած յուրաքանչյուր կալսիչ մեքենան ու շարժիչը երկու մեքենավարով ապահովելու հաշվով:

6. Կոլխոզների վարչություններին, սովխոզների ու ՄՏ կայանների դիրեկտորներին՝ անհապաղ անհրաժեշտ քանակությամբ կոլխոզնիկներ ու սովխոզների բանվորներ առանձնացնել բերքահավաքի ձիաքարշ մեքենաների վրա աշխատելու համար, նրանց ներգրավել խուրձկապ մեքենաների, հնձիչ-դիզող մեքենաների, լոբոգրեյկաների նո-

րոգման գործում, այն հաշվով, որ նրանք նախ քան բերքահավաքն սկսելը պատրաստ լինեն այդ մեքենաների վրա աշխատելու համար:

Հատուկ ուշադրություն դարձնել հնձվորների ընտրությանը և նրանց աշխատանքի ճիշտ կազմակերպմանը, անհրաժեշտ գործիք տալով նրանց գերանդիները սրելու և ուղղելու համար: Հնձի գործում բավականաչափ որակավորում չունեցող կոլխոզնիկներին ու կոլխոզնիկուհիներին օգնելու նպատակով յուրաքանչյուր խմբին տալ փորձված հնձվոր:

7. Վերականգնել կոլխոզային դարբնոցների աշխատանքը, որոնք շատ կարևոր նշանակություն ունեն բերքահավաքի հասարակ մեքենաները նորոգելու գործում, ինչպես նաև տրակտորային բրիգադաների և կոմբայնային ագրեգատների սպասարկելու գործում, պարտավորեցնելով շրջսովետների գործկոմներին և պարտիայի շրջկոմներին այդ գործում բազմակողմանի օգնություն ցույց տալ յուրաքանչյուր կոլխոզի:

8. Պարտավորեցնել մարզգործկոմներին, երկրգործկոմներին, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, մարզկոմներին, երկրկոմներին և միութենական ռեսպուբլիկաների



կոմպարտիաների կենտկոմներին՝ ապահովել, որ յուրաքանչյուր ձեռնարկություն անպայման կատարի տրակտորների ու բերքահավաքի մեքենաների պահեստի մասերի արտադրության սահմանված առաջադրանքը, ինչպես նաև ՄՏ կայաններին, սովխոզներին ու կոլխոզներին օգնություն կազմակերպել առանձին հանգույցների պատրաստման ու նորոգման գործում, ինչպես նաև կորեկ, հնդկացորեն, արևածաղիկ և խոտաբույսերի սերմնադաշտերը հնձելու համար կոմբայններին հարմարանք պատրաստելու գործում:

9. Անհրաժեշտ քանակությամբ կալատեղեր, ծածկեր պատրաստել հացահատիկը ժամանակավորապես պահելու համար և շտեմարաններ՝ մշտապես պահելու համար:

Հյուսիսային և կենտրոնական շրջանների, ինչպես նաև Սիբիրի, Ուրալի և Արևելքի շրջաններում, որտեղ բերքահավաքի ժամանակաշրջանի մեծ խոնավությունը հացահատիկի փչանալու վտանգ է ստեղծում, յուրաքանչյուր կոլխոզում և սովխոզում ապահովել հացահատիկի ամենահասարակ չորանոցների կառուցումը կամ կահավորումը գոյություն ունեցող շենքերում, ինչպես նաև

հացահատիկի չորացման համար օգտագործվող շենքերի նորոգումը:

10. Պարտավորեցնել մարզգործկոմներին, երկրգործկոմներին, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, պարտիայի մարզկոմներին, երկրկոմներին և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, միջոցներ ձեռք առնել բերքահավաքի, հացահատիկի փոխադրման համար նախապատրաստելու կոլխոզների ու սովխոզների կենդանի քաշող ուժը և տրանսպորտային միջոցները՝ նվազագույնի հասցնելով բանող ձիերի ու եզների օգտագործումը ներտնտեսային աշխատանքներում:

11. Հաշվի առնելով քաշող ուժի և ավտոտրանսպորտային միջոցների պակասը կոլխոզներում ու սովխոզներում, բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների փոխադրման ժամանակաշրջանում աշխատանքներում օգտագործելու համար ներգրավել սակավ մթերատու պիտանի կովերին՝ անասնապահական ֆերմաներից և կոլխոզնիկներին պատկանող կովերին, դրանք առավելապես օգտագործելով կոլխոզի ներսում դաշտային աշխատանքներում, ինչպես նաև թույլ տալ շրջգործկոմներին անհրաժեշտ դեպքերում պարտադիր առաջադրանք-



ներ սահմանել կոլխոզնիկին պատկանող և աշխատանքի համար պիտանի յուրաքանչյուր կովի համար, ամառային ամիսների ընթացքում, ոչ ավելի քան 10 կիլոմետր հեռավորությամբ մեկից մինչև երկու տոննա հացահատիկ փոխադրելու մթերման կայանները:

Սահմանել, որ կովերին պետք է աշխատեցնեն միայն այն կոլխոզնիկները, որոնց պատկանում են այդ կովերը:

Թույլ տալ բանվորների և ծառայողների կովերի ներգրավումը հացահատիկի փոխադրման գործում կոլխոզների համար սահմանված բնավարձի պայմաններով, երբ նրանք աշխատում են իրենց կովերով: Սահմանել, որ հացահատիկի փոխադրման գործում բանվորների և ծառայողների կովերը ներգրավվում են այն դեպքերում, երբ այդ կովերով կարող են աշխատել կովատերերը կամ նրանց ընտանիքի անդամները:

Պարտավորեցնել կոլխոզների նախագահներին և սովխոզների դիրեկտորներին՝ ժամանակին, հացահատիկի բերքահավաքը սկսելուց առաջ, առանձնացնել աշխատանքներում օգտագործելու համար ջոկված կովերն ու երինջները և կազմակերպել նրանց ընտելացումը աշխատանքի:

Տեղական արդյունաբերության ձեռնարկություններում և արհեստագործական արտելներում կազմակերպել լծասարքի պատրաստումը աշխատանքներում ներգրավված կովերի համար (անուրներ, լծեր, ձգափոկեր), ինչպես նաև անվայուղ:

12. Հաշվի առնելով բերքահավաքը հաջող կատարելու համար տրակտորները և կոմբայնները վառելանյութով ու յուղով ապահովելու բացառիկ կարևոր նշանակությունը, պարտավորեցնել ՍՍՌՄ Ժողկոմսովետին կից Նավթամթերքների մատակարարման Գլխավոր Վարչությանը, Հաղորդակցության ճանապարհների ժողկոմատին, Գետային նավատորմի ժողկոմատին և Ծովային նավատորմի ժողկոմատին՝ ապահովել վառելանյութի և յուղերի ժամանակին կուտակումը լցման կայաններում և գետամերձ բաշխիչ նավթաբազաներում, բավականաչափ դատարկ ցիստեռններ ուղարկել լցման կայանները, նավթամթերքներ ուղարկել գյուղատնտեսությանը, բերքահավաքի ու հացամթերումների ժամանակաշրջանում անխափան վառելանյութ և յուղեր մատակարարել ՄՏ կայաններին ու սովխոզներին, Սոյուզզագոտտրանսի և Սովխոզտրանսի ավտոջոկատներին;



13. Պարտավորեցնել մարզգործկոմներին, երկրգործկոմներին և ավտոնոմ ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին ըստ յուրաքանչյուր շրջանի, և միութենական ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին՝ ըստ յուրաքանչյուր մարզի սահմանել ՄՏ կայանների, սովխոզների ու օժանդակ տնտեսությունների, Սոյուզզագոտտրանսի և սովխոզտրանսի ավտոջոկատների վառելանյութի ու յուղերի պահանջը բերքահավաքի ժամանակ և խիստ վերահսկողություն հաստատել բերքահավաքի համար բերված նավթամթերքների ճիշտ բաշխման նկատմամբ նավթաբազաներում, այդ աշխատանքի ղեկավարությունը դնելով մարզգործկոմի, երկրգործկոմի, ռեսպուբլիկայի ժողկոմսովետի նախագահի տեղակալներից մեկի վրա:

Սահմանել, որ հեռավոր ՄՏ կայանները, ինչպես նաև բոլոր սովխոզները վառելանյութ պետք է տարվի առաջին հերթին:

14. Արգելել երկաթուղիների պետերին և ՍՍՌՄ Ժողկոմսովետին կից Նավթամթերքների Մատակարարման Գլխավոր Վարչությանը, լցման կայաններում և ճանապարհին վերակազմել գյուղատնտեսությանը նավթամթերքներ փոխադրելու համար կազմակերպված փակ մարշրուտները:

Պարտավորեցնել մարզգործկոմներին, երկրգործկոմներին և ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին խիստ վերահսկողություն հաստատել փակ մարշրուտների ժամանակին կազմակերպման և նրանց շրջապտույտը արագացնելու, ճանապարհի նրանց երթևեկության, նավթամթերքները ժամանակին նավթաբազաներում դատարկելու, դատարկումից հետո ցիստերնները հավաքելու և մարշրուտ կազմելու ու դրանց անհապաղ լցման կայանները վերադառնալու վրա:

15. Սահմանել, որ բերքահավաքի և հեռավոր կետերից հացահատիկի փոխադրման համար 1944 թվի հուլիս, օգոստոս և սեպտեմբեր ամիսների համար առանձնացված վառելանյութի լիմիտները ուժի մեջ են մնում 1944 թվի ամբողջ երրորդ եռամսյակի ընթացքում:

16. Արգելել ՍՍՌՄ Ժողկոմսովետին կից Նավթամթերքների Մատակարարման Գլխավոր Վարչությանը, նավթամթերքների մատակարարման տեղական վարչություններին, մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների սովետական ու պարտիական օրգաններին, այլ սպառողների բաց թողնել բերքահավաքի, հացահատիկի փոխադրման և բերքահավաքին զուգակցվող գյուղատնտ-



տեսական այլ աշխատանքներ կատարելու համար բերված նավթամթերքները:

Սահմանել, որ բերքահավաքի ու հացահատիկի փոխադրման համար բերված վառելանյութը և յուղերը ոչ ըստ նշանակման ծախսելու ու վատնելու գործում մեղավոր անձինք պետք է պատասխանատվության կանչվեն:

## ա) ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԵՎ ՁԻԹԱՏՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ -

17. Բերքահավաքը ժամանակին և առանց կորուստի կատարելու համար ապահովել կոմբայնների, հնձիչ մեքենաների, լոբոգրեյկաների և բերքահավաքի մյուս մեքենաների անխափան աշխատանքը, ինչպես նաև կազմակերպել ձեռքով կատարվող քաղ:

18. ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը մարզերի, երկրամասերի ու ռեսպուբլիկաների սովետական, պարտիական ու հողային բոլոր օրգաններից, ՄՏ կայաններից, կոլխոզներից ու սովխոզներից պահանջում են ամենօրյա պայքար կազմակերպել կորուստների դեմ, բերքը խստիվ պահպանել դաշտում դեռ չքաղած ժամանակ, բերքահավաքի, կալսելու, փոխադրելու և պահելու ժամանակ:

Այդ նպատակով՝

ա) հասարակ մեքենաներով և ձեռքով հացահատիկի հունձ կատարելուց հետո անմիջապես կազմակերպել խուրձերի փոխադրումը ու դրանք դարսել շարք-շարք, անկյունաձև ու խաչաձև, ինչպես նաև կազմակերպել հասկերի խնամքով հավաքում այդ աշխատանքում չափահաս բնակչության հետ միասին լայնորեն ներգրավելով դպրոցականներին: Փչանալու պատճառով կոմբայնների հարկադիր պարապուրդի ժամանակ կոմբայնային բերքահավաքի համար նախատեսված դաշտերում հացահատիկը հավաքել հասարակ մեքենաներով և ձեռքով, որպեսզի հացահատիկը չկծղի.

բ) ձեռնամուխ լինել բերքի կալսմանը հունձն սկսելուց ոչ ուշ քան 5 օր հետո և թույլ չտալ, որ ուշանա մասսայական կալսման ծավալումը: Կազմակերպել ՄՏ կայանների, կոլխոզների ու սովխոզների բոլոր բարդ ու ձիաքարշ կալսիչների 24-ժամյա աշխատանք:

Միաժամանակ կալսում և դիզում կատարելու համար կոլխոզներում բանվորական ու քաշող ուժի պակասության դեպքում առաջարկել կոլխոզներին, հացահատիկի չորանալուց հետո անհապաղ դիզել հնձված



ամբողջ հացահատիկը, դիզումը ավարտել հունձը վերջացնելուց ոչ ուշ քան 10—15 օր հետո:

գ) սահմանել հնձված հողամասերի պարտադիր ընդունում կոլխոզնիկներից և սովխոզների բանվորներից՝ կոլխոզներում՝ դաշտավարական բրիգադայի բրիգադիրի կողմից, իսկ սովխոզներում՝ բաժանմունքի կառավարչի կողմից օրվա ընթացքում, կոլխոզի նախագահի և սովխոզի դիրեկտորի կողմից՝ 5-օրյա ժամկետում: Ընդունելու ժամանակ հատուկ ուշադրություն դարձնել բերքահավաքի որակին, թույլ չտալով հասկեր թողնել դաշտում և անհապաղ միջոցներ ձեռք առնել վերացնելու համար հայտաբերված թերությունները.

դ) ապահովել կոմբայններից և կալսիչ մեքենաներից ստացվող ամբողջ խոնավ հացահատիկի անհապաղ չորացումը կալերում և չորանոցներում, թույլ չտալով, որ հացահատիկը հասունանա չեղջերում.

ե) չհնձված հացահատիկը, ինչպես նաև հնձված ու կուտակված և դեզ արված հացահատիկը պահպանելու համար շրջիկ պահակներ առանձնացնել հացահատիկի հասունացումից ոչ ուշ քան 10—15 օր առաջ: Կալերում կազմակերպել պահակների երկու

հերթ։ Սահմանել, որ շրջիկ պահակները և պահակները գիշեր ցերեկ պահպանում են հացահատիկը և անմիջականորեն ենթարկվում են կոլխոզի նախագահին, սովխոզի բաժանմունքի, ֆերմայի կառավարչին։ Հացահատիկի պահպանության գործում ներգրավել երիտասարդությանը, կազմակերպելով բերքի պահպանության կոմերիտական պոստեր.

գ) սահմանել ստացված բերքի խստիվ հաշվառում բերքահավաքի բոլոր ստադիաներում։ Հացահատիկը պարտադիր կերպով կշռել կալսիչների, կոմբայնների մոտ և այն շտեմարաններին ընդունելիս։ Ապահովել, որ հացահատիկը կալերից շտեմարանները և մթերման կետերը փոխադրելու ժամանակ բեռնագրեր գրվեն՝ մատնանշելով կառապանի ազգանունը, ուղարկվող հացահատիկի ճիշտ քանակը, հիշատակելով տեսակը և կուլտուրան։

19. Պարտավորեցնել շրջգործկոմների նախագահներին և պարտիայի շրջկոմների քարտուղարներին՝ վերահսկողություն ապահովել հացահատիկի պահպանության և հաշվառման վրա դաշտում, կալատեղերում կալսելու և փոխադրելու ժամանակ։ Ապահովել կշռավարների, պահեստապետների,



պահակների, շրջիկ պահակների և հացահատիկի փոխադրման ավագ. դումակայինների ընտրությունը փորձված կոլխոզնիկների, ՄՏ կայանների ու սովխոզների բանվորների թվից։

## բ) ԿԱՐՏՈՖԻԼԻ ԵՎ ԲԱՆՋԱՐԵՂԵՆԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԳԾՈՎ

20. Ավարտել կարտոֆիլի ու բանջարեղենի բերքահավաքը նախ քան աշնանային ցրտերի սկսվելը։ Ապահովել օրվա ընթացքում փորված կարտոֆիլի և քաղված բանջարեղենի ամենօրյա հավաքումը։ Կարտոֆիլի բերքահավաքից հետո փոցխել հողամասերը և, որպես կանոն, հերկել՝ հավաքելով պալարները։

21. Հանված կարտոֆիլը և հավաքված բանջարեղենները ամեն օր չորացնելուց հետո փոխադրել շտեմարանները կամ ժամանակավորապես դիզել դաշտում, ապահովելով դրանց փոխադրումը մթերման կայանները կամ թե երկարատև պահպանման կույտերում հավաքելը՝ նախ քան ցրտերի սկսվելը։ Լայնորեն գործադրել բանջարեղենի սերմնադաշտերի ցողունների ընտրովի կտրումը նրանց հասունացման զուգընթաց, և դրանց չորացումը ծածկերի տակ ու մա-

րադներում, թույլ չտալով, որ սերմի կորուստ տեղի ունենա փոխադրումների ժամանակ:

22. Մթերումների տեղերում կազմակերպել կարտոֆիլի ու բանջարեղենի մասսայական չորացումը մթերման և առևտրական կազմակերպությունների չորանոցներում, ինչպես նաև կոլխոզներում ու կոլխոզնիկների մոտ:

## գ) ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԳԾՈՎ

23. ՍՍՌՄ Ժողկոմսովետը և Համկ(բ)Պ Կենտկոմը հողային, սովետական ու պարտիական օրգանների, կոլխոզների, ՄՏ կայանների ու սովխոզների ուշադրությունը հրավիրում են շաքարի ճակնդեղի բերքահավաքը ընթացիկ տարում ժամանակին և առանց կորուստի կատարելու մեծ նշանակության վրա: Այդ նպատակով գործարանային շաքարի ճակնդեղը հանելու սկիզբը սահմանել սեպտեմբերի 10-ին, բացառությամբ Ուզբեկական, Ղազախական և Կիրգիզական ՍՍՌ-ներից, որոնց համար հանելու սկիզբը սահմանել օգոստոսի 20—25-ին:

Պարտավորեցնել ճակնդեղացան շրջանների մարզային և երկրային գործկոմներին և



ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին՝ սահմանել շաքարի ճակնդեղ հանելու սկիզբը ըստ առանձին շրջանների ու կոլխոզների, նայած ճակնդեղի վիճակին, սակայն այն հաշվով, որ շաքարի գործարանների գործարկման սկզբին գործարանների ու ճակընդեղամթերման կայանների տերիտորիայում փորված-հանված լինի ճակնդեղի ոչ պակաս քան հնգօրյա պաշար, իսկ այնուհետև ապահովվի շաքարի գործարանների անխափան բեռնավորումը ճակնդեղով:

24. Սահմանել շաքարի ճակնդեղի փորման ու փոխադրման ավարտումը հետևյալ ժամկետներին.

| | Փորում-հանում | Փոխադրում |
|---|---|---|
| Ուզբեկական, Կիրգիզական և Ղազախական ՍՍՌ-ներում | 15.XI | 15.XII |
| Վրացական, Հայկական ՍՍՌ-ներում և Կրասնոդարի երկրամասում | 5.XI | 25.XI |
| Կրասնոյարսկի և Ալթայի երկրամասերի դեռամերձ շրջաններում | 1.X | 20.X |
| Կրասնոյարսկի և Ալթայի երկրամասերի մնացած շրջաններում, Կեմերովո- | | |

| | Փորում-հանում | Փոխադրում |
|---|---|---|
| յի և Նովոսիբիրսկի մարզերում, Բուրյաթ-մոնղոլական և Բաշկիրական ԱՍՍՌ-ներում | 10.X | 10.XI |
| Ուկրաինական ՍՍՌ-ում և Կուրսկի մարզում | 20.X | 1.XII |
| Մնացած ճակնդեղացան շրջաններում | 20.X | 20.XI |

25. Պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկոմատին և ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին, ճակնդեղացան շրջանների պարտիական ու սովետական կազմակերպություններին՝

ա) ապահովել կոլխոզներում և ՄՏ կայաններում ճակնդեղ փորելու համար անհրաժեշտ ինվենտարի (ճակնդեղի հանիչների, թիակների, չափիչների, փորիչների և մյուս ինվենտարի) նորոգումը, ինչպես նաև խսիրներ պատրաստել ճակնդեղը կիտված պահելու համար.

բ) ճակնդեղի փոխադրումն սկսելուց 5 օր առաջ ավարտել հին սայլերի նորոգումը և պատրաստել նոր սայլեր, տրակտորային քարշակներ, նորոգել ավտոմեքենաները, ինչպես նաև ճակնդեղի փոխադրման համար հատկացված տրակտորները.



գ) ոչ ուշ քան 1944 թ. օգոստոսի 10-ը ավարտել սայլուղիների նորոգումը կարգավորել կամուրջները, ինչպես նաև ճակնդեղի մթերման կայանների մուտքերը.

դ) ճակնդեղ փոխադրելու համար ամրացնել անհրաժեշտ քանակությամբ քաշող ուժ, թույլ չտալով դրանք օգտագործել այլ աշխատանքների համար՝ մինչև ամբողջ ճակնդեղի փոխադրման ավարտումը.

ե) հատուկ ուշադրություն դարձնել շաքարի ճակնդեղի ճիշտ կիտմանը, որպես կարևորագույն միջոցառումի, որն ապահովում է նրա հուսալի պահպանումը մինչև գործարաններ փոխադրելը: Դաշտային կույտերում շաքարի ճակնդեղի պահպանման պատասխանատվությունը, մինչև այն շաքարի գործարանների ընդունման կայանին հանձնելը, դնել կոլխոզների նախագահների և սովխոզների դիրեկտորների վրա.

զ) շաքարի ճակնդեղի կորուստների և հափշտակումների դեմ պայքարելու նպատակով ապահովել խիստ հաշվառում փորված-հանված ամբողջ ճակնդեղը չափիչներով կոլխոզներում՝ ըստ օղակների չափելու միջոցով. կազմակերպել ճակնդեղի պլանտացիաների 24-ժամյա պահպանություն և թույլ չտալ, որ անասուններն արածան ճա-

*կընդեղի դաշտերում՝ մինչև ճակնդեղի փոխադրման լրակատար ավարտումը:*

26. *Շաքարի ճակնդեղի արագ հանումը խրախուսելու նպատակով, ինչպես նաև ճակնդեղը կիտելու համար հանձնարարել կոլխոզներին կոնտրակտացիայի գծով և բնավարձով հանձնված ճակնդեղի համար կոլխոզներին հասանելիք շաքարից 40-ական գրամ առանձնացնել հանված ու մաքրված ճակնդեղի յուրաքանչյուր ցենտների համար, և 20-ական գրամ կիտված ճակնդեղի յուրաքանչյուր ցենտների համար, շաքարի ճակնդեղի բերքահավաքին մասնակցող կոլխոզնիկների վրա ըստ աշխօրերի բաշխելու համար: Հանձնած ճակընդեղի դիմաց կոլխոզի ստացած մնացած շաքարը բաշխվում է ըստ աշխօրերի, հաշված նաև այն աշխօրերը, որոնք վաստակված են շաքարի ճակնդեղի բերքահավաքի և սահմանված կարգով կիտելու ժամանակ:*

*Շաքարի ճակնդեղի բերքահավաք կատարող կոլխոզնիկներին շաքար տրվում է յուրաքանչյուր տասնօրյակում, որի համար առաջարկել շաքարի գործարաններին՝ ավանսով 60-ական գրամ շաքար բաց թողնել կոլխոզներին՝ հանձնված ճակնդեղի յուրաքանչյուր ցենտների դիմաց, սկսած շաքարի*



*գործարանի աշխատանքի երկրորդ տասնօրյակից: Կոլխոզների հետ շաքարի վերջնական հաշվարկ շաքարի գործարանները պետք է կատարեն ամբողջ ճակնդեղը հանձնելուց հետո:*

27. *Կոլխոզների կողմից ոչ-կոնդիցիոն ճակնդեղ հանձնելու դեպքում, մթերման կայանի պահանջով, կոլխոզի ուժերով վերատեսակավորել ամբողջ ոչ-կոնդիցիոն ճակընդեղը, իսկ այդ բանը չկատարելու դեպքում նվազեցնել շաքար տալը ոչ-կոնդիցիոն ճակնդեղի դիմաց՝ սահմանված նորմայի մեկ երրորդի չափով:*

28. *Շաքարի գործարանները և ճակնդեղի մթերման կայանները փոխադրված ճակընդեղի յուրաքանչյուր ցենտների դիմաց սայլապաններին, շոֆերներին և ավտոմեքենայի վրա բեռնողներին շաքար են տալիս շաքարի գործարանների հաշվին՝ հետևյալ քանակությամբ.*

(Գրամներով)

| | Սայլապաններին | Շոֆերներին | Ավտոմեքենաների վրա բեռնողներին |
|---|---|---|---|
| *Մինչև 6 կիլոմետր* | 10 | 2 | 2 |
| *6-ից 15 կիլոմետր* | 25 | 5 | 3 |
| *15 կիլոմետրից ավելի* | 40 | 8 | 4 |

Շաքարի վերոհիշյալ քանակը սայլապաններին տրվում է պայմանով, որ ճակնդեղի բեռնումն ու բեռնաթափումը նրանք կատարեն անձամբ:

Շաքարի ճակնդեղ փոխադրելու համար հասանելիք շաքարը գործարանները տալիս են անմիջականորեն սայլապաններին, գործարանները և ճակնդեղի մթերման կայանները նրանց կողմից բերված ճակնդեղի քանակի համապատասխան, իսկ դրամական վարձատրությունից անմիջականորեն սայլապաններին վճարել սահմանված դրույքի 50 տոկոսը:

29. Արգելել կոլխոզներին՝ ճակնդեղագործ կոլխոզնիկներին տալու համար ստացված շաքարը ծախսել ոչ ըստ նշանակման:

30. Իրենց կովերը շաքարի ճակնդեղի փոխադրման գործին տրամադրող կոլխոզնիկներին, բանվորներին ու ծառայողներին խրախուսելու համար շաքարի գործարաններին թույլ տալ, կոնտրակտացիոն պայմանագրերով կոլխոզներին բաց թողնվող շաքարից բացի, սահմանված արտոնյալ գնով շաքար վաճառել կոլխոզնիկներին, բանվորներին ու ծառայողներին՝ յուրաքանչյուր տոննա-կիլոմետրի դիմաց 100 գրամի չափով:



## դ) ԲԱՄԲԱԿԻ, ԵՐԿԱՐԱԹԵԼ ՎՈՒՇԻ ԵՎ ԿԱՆԵՓԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԳԾՈՎ

31. Ավարտել անցյալ տարիների բամբակի բերքի մնացորդի փոխադրումը մթերման կայաններից գործարանները ոչ ուշ քան հոկտեմբերի 1-ը, իսկ երկարաթել վուշի բուսաթելի և կանեփի փոխադրումը՝ ոչ ուշ քան 1944 թվի սեպտեմբերի 5-ը:

Պարտավորեցնել ՍՍՌՄ Տեքստիլ ժողկոմատին և Ուզբեկական, Տաջիկական, Թուրքմենական, Ղազախական, Կիրգիզական, Ադրբեջանական ու Հայկական ՍՍՌ-ների ժողկոմսովետներին՝ ժամանակին անհրաժեշտ շենքեր տրամադրել 1944 թվի բամբակի բերքն ընդունելու համար: Մինչև բամբակի նոր բերքի ստացումը ամբողջովին նորոգել, մաքրել ու ախտահանել բամբակի բոլոր պահեստներն ու շենքերը: Պահեստների պակասը լրացնել ժամանակավոր ծածկեր ու մարագներ կառուցելով, ինչպես նաև օգտագործելով այլ ազատ շենքեր:

32. Բամբակի բերքահավաքի ժամանակ ապահովել նրա առանձին հավաքումը ըստ տեսակների, թույլ չտալով, որ տեսակները խառնվեն իրար, որ հիվանդ կնգուղները խառնվեն առողջներին, ինչպես նաև կո-

րուստներ տեղի ունենան բամբակի բերքահավաքի, պահպանման և դաշտից մթերման կայանները փոխադրելու ժամանակ։

33. Ջրովի բամբակագործության շրջաններում ցրտահերկը ժամանակին կատարելու նպատակով առաջարկել կոլխոզներին ու սովխոզներին, ոչ ուշ քան նոյեմբերի 20-ը հավաքել գուզապայները դաշտում, չբացված միայնակ կնդուղների առկայության դեպքում դրանք հետագայում մաքրել, բամբակի բերքահավաքը ամբողջովին ավարտել նոյեմբերի 25-ին, իսկ դաշտերի մաքրումը բամբակենու ցողուններից՝ դեկտեմբերի 1-ին։

34. Երկարաթել վուշի և կանեփի բերքահավաքի ժամանակ օգտագործել ՄՏ կայաններում, սովխոզներում և կոլխոզներում եղած վուշը դզող և կանեփը հավաքող մեքենաները, որի համար ըստ յուրաքանչյուր ՄՏ կայանի ու կոլխոզի սահմանել վուշի ու կանեփի մեքենայական ու ձեռքի բերքահավաքի պլան, մեքենայական բերքահավաքի համար ջոկելով առանձնել ուղիղ ցողուններ ունեցող հողամասերը։ Վուշի և կանեփի կալումը սկսել, չսպասելով ամբողջ բերքի հավաքման, և այն վերջացնել բերքահա-



վաքն ավարտելուց ոչ ուշ քան 10 օր հետո։

35. Ավարտել երկարաթել վուշի ամբողջ բերքի փռումն ու թրջոցը ոչ ուշ քան սեպտեմբերի 15-ին և կանեփի թրջոցը ոչ ուշ քան հոկտեմբերի 1-ին։ Լավ փռելատեղերով չապահովված կոլխոզներին առաջարկել կիրառել վուշի սառը ջրով թրջոց, սերմնաբուծական նոսրացված ցանքերի կանեփի համար թրջոցի հետ միասին կիրառել ցողունների փռումը։

36. Թույլ տալ կոլխոզներին կանեփ ջոկող կոլխոզնիկներին տալ ջոկված քանակի 30 տոկոսը, կանեփի բերքահավաքի ժամանակ վաստակած աշխօրերի վրա բաշխելու համար։ Կանեփը տալ ջոկելուց անմիջապես հետո։

37. 1944—1945 թվերի համար ուժի մեջ պահել «1941 թվի բերքի վուշի ու կանեփի նախնական մշակումը և մթերումը խթանելու մասին» ՍՍՌՄ Ժողկոմսովետի և Համ. Կ(բ)Պ Կենտկոմի 1942 թվի հունվարի 11-ի № 29 որոշումը, այսինքն՝ վուշի և կանեփի ցանք ունեցող կոլխոզներին թույլ տալ վուշի ու կանեփի նախնական մշակման ու տեսակավորման ժամանակ նորմաները կատարող ու գերակատարող կոլխոզնիկների

համար սահմանել լրացուցիչ վարձատրություն՝ պարենային հացահատիկով ու դրամով, նրանց հասանելիք աշխօրերից դուրս, հետևյալ չափերով․

ա) Մշակված և պետությանը հանձնված վուշի ու կանեփի բուսաթելի յուրաքանչյուր 10 կիլոգրամի համար կոլտնտեսականներին վճարել 2 կիլոգրամ հացահատիկ ու 2 ռուբլի դրամ․

բ) Տեսակավորված, չորացված և գործարաններին հանձնված վուշի ու կանեփի տրեստայի յուրաքանչյուր 100 կիլոգրամի համար մեկ կիլոգրամ հացահատիկ և 1 ռուբլի դրամ․

գ) Պլանից դուրս պետական գնումների կարգով պետությանը հանձնված վուշի ու կանեփի ամբողջ բուսաթելի ու տրեստայի գծով, այդ կուլտուրաների նախնական մշակմամբ զբաղվող կոլտնտեսականներին լրացուցիչ կերպով վճարել կոլխոզի ստացած պարգև-հավելումի 40 տոկոսը։

Վերոհիշյալ բնավճարն ու դրամական վարձատրությունը կատարել վուշի ու կանեփի մշակված արտադրանքը պետությանը հանձնելուց անմիջապես հետո։



## Ե) ԾԽԱԽՈՏԻ ՈՒ ՄԱԽՈՐԿԱՅԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԳԾՈՎ․

38․ Ծխախոտի ու մախորկայի բերքահավաքը կատարել տեխնիկական լրակատար հասունության վիճակում, թույլ չտալով գերհասունացում, ինչպես նաև ծխախոտի չհասած տերևների և մախորկայի բույսերի հավաքումը։ Ծխախոտի արդյունաբերության հումքային ռեսուրսները ավելացնելու համար չորացնել կտրված գագաթները, բույսերի դաշտային մշակման ժամանակ հեռացված փոճերը, իսկ վաղ սածիլում կատարված հողամասերում ապահովել մախորկայի ու ծխախոտի երկրորդ բերքի ստացումը։

39․ Սահմանել ծխախոտի ու մախորկայի բերքահավաքն ավարտելու հետևյալ ժամկետները․

ա) ծխախոտի համար՝ Ղազախական ՍՍՌ-ում, Ալթայի և Խաբարովսկու երկրամասերում, Ստալինգրադի, Վորոնեժի մարզերում՝ ոչ ուշ քան սեպտեմբերի 20-ին, Ուզբեկական, Կիրգիզական, Տաջիկական, Թուրքմենական, Հայկական, Ուկրաինական ՍՍՌ-ներում և Կրասնոդարի երկրամասում՝ ոչ ուշ քան հոկտեմբերի 1-ին, Վրացական

և Ադրբեջանական ՍՍՌ-ներում, Ղրիմում և Դաղստանի ԱՍՍՌ-ում՝ ոչ ուշ քան հոկտեմբերի 10-ին.

բ) մախորկայի համար՝ Ալթայի, Կրասնոյարսկի և Խաբարովսկի երկրամասերում, Օմսկի, Կուրգանի, Կեմերովոյի, Վոլոգդայի, Նովոսիբիրսկի, Իրկուտսկի, Չիտայի, Սվերդլովսկի և Մոլոտովյան մարզերում, Ուդմուրտական և Բուրյաթ-Մոնղոլական ԱՍՍՌ-ներում՝ ոչ ուշ քան սեպտեմբերի 1-ին, Իսկ մնացած բոլոր շրջաններում՝ ոչ ուշ քան սեպտեմբերի 20-ին:

40. Պարտավորեցնել ՍՍՌՄ Հողժողկոմատին՝ ժամանակին ներմուծել շրջանները և մախորկա ցանող կոլխոզներին բաց թողնել անհրաժեշտ քանակությամբ թել՝ ծխախոտ ու մախորկա շարելու և չորացնելու համար:

## գ) ՍԵՐՄԱՑՈՒ ԽՈՏԱԲՈՒՅՍԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԳԾՈՎ

41. Խոտաբույսերի սերմերի թափում և կորուստ թույլ չտալու նպատակով ապահովել սերմացու երեքնուկի, առվույտի, տիմոֆեյեվկայի և ժիտնյակի բերքահավաքը ոչ ավելի քան 5 օրում, իսկ սերմացու խոտաբույսերի կալսումն ու չորացումը ա-



վարտել 20 օրվա ընթացքում, սկսած հնձի օրվանից:

42. Ապահովել խոտաբույսերի սերմերի մաքրումը և դրանք ցանքային կոնդիցիային հասցնել անմիջականորեն կալսելուց և չորացնելուց հետո, խզում թույլ չտալով այդ աշխատանքների միջև:

43. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին, նախօրոք սահմանված կարգի համապատասխան կոլխոզների կողմից պետությանը հանձնված խոտաբույսերի սերմերը հաշվել պետությանը պարտադիր կարգով հացահատիկ հանձնելու և ՄՏ կայանի աշխատանքի բնավարձի հաշվին, ըստ հետևյալ էկվիվալենտների.

ա) երեքնուկի, առվույտի, ժիտնյակի, սորնայա եժայի, ռայգրասի, լիսոխվոստի, կարմիր օվսյանիցայի և մարգագետնային այլ խոտերի վաճառված սերմի մեկ ցենտները հացահատիկային կուլտուրաների չորս ցենտների դիմաց.

բ) Տիմոֆեյեվկայի, ամերիկյան սիզախոտի, մարգագետնային օվսյանիցայի վաճառված սերմի մեկ ցենտները հացահատիկային կուլտուրաների երեք ցենտների դիմաց.

գ) վիկայի, կորնգանի, սուդանական

խոտի, մոլարայի, աֆրիկյան կորեկի և սերադելլայի վաճառված սերմերի մեկ ցենտները հացահատիկային կուլտուրաների երկու ցենտների դիմաց.

դ) մարգագետնային միատլիկի, սպիտակ պոլեվիցայի, շվեդական երեքնուկի, սպիտակ երեքնուկի վաճառված սերմի մեկ ցենտները հացահատիկային կուլտուրաների 6 ցենտների դիմաց:

Պետության վաճառվող երեքնուկի, առվույտի, ժիտնյակի, տիմոֆեյևկայի, կորնգանի և վիկայի սերմերը կոլխոզները, հացահատիկային կուլտուրաների պարտադիր մթերումների պլանները կատարելուց, սերմվարկը վերադարձնելուց, սերմացուի ֆոնդերը կուտակելուց և ՄՏ կայանի աշխատանքի դիմաց վճարելուց հետո իրավունք ունեն Զագոտզեռնոյի կայաններից հացահատիկային կուլտուրաների սերմացու ստանալու վերոհիշյալ էկվիվալենտով: Հացահատիկային կուլտուրաների սերմացուն կոլխոզներին բաց է թողնվում կանխիկ վճարով, մթերման գներով, ավելացնելով ցենտներին երկու ռուբլի (Զագոտզեռնոյի ծախսերը ծածկելու համար):

44. Ելնելով այն բանից, որ հացահատիկի և կոլխոզային ու սովխոզային մյուս ար-



տադրանքների հափշտակումը ամենածանր հանցագործություն է, ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն դատական օրգաններին պարտավորեցրել են խստորեն պատժել հացահատիկի և գյուղատնտեսական մյուս արտադրանքները հափշտակողներին կոլխոզներում ու սովխոզներում, ընդհուպ մինչև հանրային (սոցիալիստական) սեփականության պահպանման մասին 1932 թվի օգոստոսի 7-ի օրենքի կիրառումը:

## II

## ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ԺԱՄԱՆԱԿ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԵՎ ՎԱՐՁԱՏՐՄԱՆ ԳԾՈՎ

1. Սահմանել, որ բերքահավաքի աշխատանքներին պարտադիր կերպով մասնակցելու է կոլխոզներում և սովխոզների տերիտորիայում ապրող ամբողջ աշխատունակ բնակչությունը՝ կոլխոզնիկները և նրանց ընտանիքների անդամները, սովխոզների բանվորները, ծառայողները և նրանց ընտանիքների անդամները, ինչպես նաև արդյունաբերության ու տրանսպորտի մեջ չաշխատող մնացած ո՛չ կոլխոզնիկ աշխատունակ բնակչությունը, ինչպես չափահասները,

այնպես էլ դեռահասները, սկսած 14 տարեկան հասակից և ավելի բարձր:

Սահմանել, որ 1944 թվի բերքահավաքի շրջանում բոլոր աշխատունակ չափահաս կոլխոզնիկները, սկսած 14 տարեկան հասակից և ավելի բարձր, անկախ նրանց կողմից աշխօրերի մինիմումը կատարելուց, պարտադիր կերպով պետք է աշխատանքի դուրս գան:

2. Բերքահավաքի աշխատանքներում երեխա ունեցող կոլխոզնիկուհիների և սովխոզների բանվորուհիների ակտիվ մասնակցությունն ապահովելու և բերքահավաքով զբաղված աշխատողների աշխատանքային ժամանակը խնայելու նպատակով պարտավորեցնել կոլխոզների վարչություններին, սովխոզների դիրեկտորներին՝ բերքահավաքի ժամանակաշրջանում կազմակերպել մանկամսուրներ, մանկապարտեզներ, մանկական հրապարակներ և դաշտակայաններ՝ տնտեսությունից հեռավոր հողամասերում:

3. Առաջարկել կոլխոզներին սահմանել, որ անհարգելի պատճառներով բերքահավաքի աշխատանքներ կատարելուց հրաժարվելու համար աշխատունակ չափահաս կոլխոզնիկները, կոլխոզի վարչության որոշմամբ, գյուղատնտեսական արտելի կանո-



նադրության 17-րդ հոդվածի համապատասխան, ենթարկվում են տույժի՝ աշխօրերով և զրկվում են մթերային ավանսներ ստանալու իրավունքից:

4. Պարտավորեցնել ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, երկրգործկոմներին, մարզգործկոմներին և շրջգործկոմներին՝ որոշել կոլխոզների ու սովխոզների կողմից բանվորական ուժի լրացուցիչ պահանջը բերքահավաքի ժամանակաշրջանում, և մոբիլիզացիայի կարգով բերքահավաքի աշխատանքներում ներգրավել քաղաքի ու գյուղական վայրերի բնակչությանը, ինչպես նաև դպրոցների ու ԲՈՒՀ-երի սովորողներին, համաձայն ՍՍՌՄ Ժողկոմսովետի և Համ. Կ(բ)Պ Կենտկոմի 1942 թվի ապրիլի 13-ի որոշման «Քաղաքների և գյուղական վայրերի աշխատունակ բնակչությանը կոլխոզներում, սովխոզներում և ՄՏ կայաններում գյուղատնտեսական աշխատանքներ կատարելու համար մոբիլիզացնելու կարգի մասին»:

5. Մոբիլիզացիայի կարգով բերքահավաքի աշխատանքներում ներգրավվածների համար սահմանել պարտադիր առաջադրանքներ՝ 40—50 աշխօր կոլխոզներում և 50—60 օրվա նորմա սովխոզներում, իսկ

դարաններ, ո՛չ ի վնաս ռազմական պատվերների կատարման, կոմբայնների, տրակտորների և բերքահավաքի դաշտային նորոգման գործում ՄՏ կայաններին, սովխոզներին ու կոլխոզներին օգնություն ցույց տալու համար:

9. Պարտավորեցնել ՍՍՌՄ Առևտրի ժողկոմատին՝ ՄՏ կայաններում և սովխոզներում աշխատելու համար մոբիլիզացված ինժեներներին, մեխանիկներին ու որակյալ բանվորներին ապահովել հացով և այլ մթերքներով՝ գյուղական վայրերի արդյունաբերական բանվորների համար սահմանված նորմաներով: Բերքահավաքի աշխատանքներին մոբիլիզացվելու ժամանակամիջոցում նրանց համար պահպանել պարենային քարտերը ըստ նրանց ընտանիքների բնակության վայրի:

10. Ի լրացումն ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1942 թվի ապրիլի 13-ի որոշման 8-րդ կետի, սահմանել, որ գյուղատնտեսական աշխատանքների համար մոբիլիզացված որակյալ բանվորների աշխատավարձը ըստ աշխատանքի վայրի պահպանվում է վերջին երեք ամիսների ամսական միջին աշխատավարձի 50 տոկոսի չափով:



11. Բոլոր կոլխոզներում և սովխոզներում ապահովել բերքը հավաքելու և մթերքները պետական մթերակայանները փոխադրելու աշխատանքի կազմակերպումը անհատական և փոքր խմբային (օղակային) գործավարձի լայն կիրառման հիման վրա: Այդ կապակցությամբ, հանձնարարել կոլխոզներին, որ նրանք հունձի, խուրձ կապելու, դարսելու և փոխադրելու, հասկերը հավաքելու ապարեղում կիրառեն ձեռքի աշխատանք կատարող բրիգադաներում և օղակներում անհատական կամ խմբակային առաջադրանքներ, հատկացնելով դաշտի որոշ հողամաս, իսկ սերմացանման, հացահատիկի փոխադրման և այլ աշխատանքներում գործադրել անհատական կամ խմբակային առաջադրանքներ, նկատի առնելով աշխատանքի որոշակի ծավալ:

12. Հանձնարարել կոլխոզների վարչություններին և սովխոզների դիրեկտորներին՝ կովերով աշխատող կոլխոզնիկների, բանվորների ու ծառայողների համար սահմանել արտադրական նորմաներ ձիով կատարվող նույնպիսի աշխատանքի համար կոլխոզի կամ սովխոզի ընդունած նորմաների մեկ երրորդի չափով, պահպանելով գործավարձային նույն գնահատումները:

Այն կոլխոզնիկներին, որոնք աշխատում են կոլխոզների բերքահավաքի ասպարեզում իրենց կովերով, աշխատանքը կատարելու համար աշխօրեր գրանցել կրկնակի չափով, այն բանվորներին և ծառայողներին, որոնք աշխատում են սովխոզների բերքահավաքի ասպարեզում իրենց կովերով, վարձատրություն տալ կրկնակի չափով՝ համեմատած այն վարձատրության հետ, որը սահմանված է ձիով կատարվող նույնպիսի աշխատանքի համար:

Կոլխոզնիկների, բանվորների և ծառայողների կովերը հանրային տնտեսության մեջ աշխատեցնելու բոլոր օրերին ապահովել աշխատանքներին մասնակցող հանրային հոտի կովերի հետ հավասար կերով:

13. Հանձնարարել կոլխոզներին՝ սահմանել իրենց կովերով պետության համար հացահատիկ փոխադրող կոլխոզնիկներին, բանվորներին և ծառայողներին վարձատրելու հետևյալ կարգը.

ա) իր կովով հացահատիկ փոխադրող կոլխոզնիկին, բանվորին և ծառայողին ամեն մի ցենտներ-կիլոմետրի համար գրանցել 0,30 աշխօր.

բ) խրախուսելու կարգով յուրաքանչյուր



ցենտներ-կիլոմետրի համար լրացուցիչ վճարել մինչև 135 գրամ հացահատիկ՝ ի հաշիվ այն 15 տոկոս հատկացումների, որոնք առանձնացված են կոլխոզնիկներին ավանսավորելու և ներտնտեսական կարիքների համար, իսկ սահմանված ամսական նորմայից ավելի փոխադրված հացահատիկի համար հացահատիկ տալ կրկնակի չափով:

Սովխոզներում պետության համար բանվորների ու ծառայողների կովերով հացահատիկ փոխադրելու աշխատանքը վարձատրել կրկնակի չափով՝ համեմատած ձիով կատարվող նույն աշխատանքի վարձատրության հետ, ինչպես նաև խրախուսելու կարգով լրացուցիչ հացահատիկ տալ այն չափով ու կարգով, որոնք սահմանված են սույն կետում՝ իրենց կովերով հացահատիկ փոխադրող կոլխոզնիկների համար:

14. Բերքահավաքի ժամանակվա համար և մինչև մթերումների պլանը կատարելը, կոլխոզնիկներին ավանս տալու և ներտնտեսական կարիքների համար հատկացնել հացահատիկ, արևածաղիկ, կարտոֆիլ և բանջարեղեն հետևյալ չափերով. հացահատիկ 15 տոկոս, բրինձ 10 տոկոս, արևածաղիկ 5 տոկոս, կարտոֆիլ և բան-

ջարբեղեն 15 տոկոս, ելնելով այդ կուլտուրաների արտադրանքի այն քանակից, որը հանձնվել է պետական մթերակայաններին:

Խիստ վերահսկողություն հաստատել ավանսներ տալու և ներտնտեսական կարիքների համար մթերքներ հատկացնելու սահմանված նորմաների պահպանման վրա, կասեցնելով այդ նորմաները բարձրացնելու ուղղությամբ կատարվող խախտումների ամեն մի փաստ և պատասխանատվության կանչել մեղավորներին, որպես հացահատիկ վատնողների:

15. Փոխել վարձատրության գոյություն ունեցող կարգը այն մեքենավարների համար, որոնք աշխատում են վուշ և կանեփ հավաքող մեքենաներով, երեքնուկ և առվույտ կալսող ու սերմը հանող կալսիչներով և վուշ հավաքող մեքենաներով ՄՏԿ-ներում և գոյություն ունեցող նորմաները կատարելու համար նրանց վարձատրությունը սահմանել աշխօրերով՝ այդ աշխատանքներում նրանց հետ աշխատող տրակտորիստների աշխատավարձի չափով և տարածել նրանց վրա աշխօրերի գրանցման ու հաշվարկման կարգը, ինչպես նաև թե՛ դրամով, թե՛ նատուրալ վարձատրությամբ



ապահովված այն մինիմումը, որը սահմանված է ՄՏԿ-ների տրակտորիստների համար:

16. Թույլատրել կոլխոզների վարչություններին՝ կոլխոզային քաշող ուժով աշխատող կոլխոզնիկներին տալ յուրաքանչյուր հինգերորդ մասը այն դարմանից, որը հավաքվել և կոլխոզ է փոխադրվել կամ դեզ է արվել կոմբայնային բերքահավաքից հետո: Կոմբայններով հավաքելուց հետո իրենց կովերով դարմանը փոխադրելու և դեզ անելու ասպարեզում աշխատող կոլխոզնիկներին վճարել յուրաքանչյուր երրորդ մասը այն դարմանից, որը փոխադրվել է դաշտից կամ դեզ է արվել:

17. 1944 թվին պահպանել 1943 թվին գործող այն կարգը, որի համաձայն մթերքով պարգևներ են տրվում սովխոզների այն տրակտորիստներին և ՄՏԿ-ների հողամասային շրջիկ մեխանիկներին, որոնք ապահովել են կոմբայնային բերքահավաքի սահմանված պլանի կատարումը լավ որակով: Սահմանել, որ ՄՏԿ-ների շրջիկ հողամասային այն մեխանիկները, որոնք ապահովել են կոմբայնային բերքահավաքի սահմանված պլանի կատարումը լավ որակով, ՄՏԿ-ներից ստանում են հացահատ-

կով 10 փութ մթերքով պարգև ոչ ուշ քան 15 օր անց բերքահավաքն ավարտելուց հետո, իսկ սովխոզների և սելեկցիոն կայանների տրակտորիստները, բացի դրամական վարձատրությունից, ստանում են նաև մթերային պարգև հացահատիկով՝ նրանց հետ միասին աշխատող կոմբայնավարների համար սահմանված չափով:

18. Պարտավորեցնել տեղական պարտիական, սովետական և հողային օրգաններին՝ հասնել այն բանին, որ բոլոր կոլխոզներում սահմանվի բերքահավաքի աշխատանքի ճիշտ հաշվառում և բերքի առանձին հաշվառում ըստ բրիգադների և օղակների այնպես, որ այդ հաշվառումն ապահովի աշխատանքի լրացուցիչ վարձատրության ստացումը կոլխոզնիկների ու ՄՏԿ-ների տրակտորիստների կողմից գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու համար, իսկ սովխոզներում ապահովվի մթերային այն վարձատրության վճարումը, որը սահմանված է ՍՍՌՄ Ժողկոմսովետի 1943 թվի սեպտեմբերի 17-ի «Սովխոզներում կարտոֆիլ, բանջարեղեն ու մրգեղեն հավաքելու և փոխադրելու համար վճարվող մթերային վարձատրության մասին» որոշմամբ:



19. Արգելել, առանց ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի թույլտվության՝ մինչև բերքահավաքը վերջանալը և գյուղատնտեսական մթերքները պետության հանձնելը կոլխոզներից, սովխոզներից և ՄՏԿ-ներից մոբիլիզացնել բանվորական ուժ, կենդանի քարշող ուժ և փոխադրական միջոցներ որևէ այնպիսի նպատակով, որը կապված չէ բերքը հավաքելու և պետության համար գյուղատնտեսական մթերքներ փոխադրելու հետ:

## III

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՄԹԵՐՄԱՆ ԳԾՈՎ

ՍՍՌՄ Ժողկոմսովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը Մթերումների ժողկոմատին, մարզգործկոմներին, երկրգործկոմներին, ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, պարտիայի մարզկոմներին և երկրկոմներին, միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, շրջգործկոմներին և պարտիայի շրջկոմներին պարտավորեցրին՝

1. Բերքը հավաքելու առաջին օրերից կազմակերպել հացահատիկի, տեխնիկական

կուլտուրաների և գյուղատնտեսական այլ մթերքների փոխադրումը պետական մթերակայաններ. այդ նպատակով հատկացնել անհրաժեշտ քանակությամբ կենդանի քարշող ուժ և ավտոմեքենաներ, արգելելով օգտագործել դրանք որևէ այլ աշխատանքի համար՝ մինչև մթերման պլանը յուրաքանչյուր կոլխոզի և սովխոզի կողմից լրիվ կատարվելը:

2. Արգելել միանգամայն լավորակ հացահատիկի, բրնձի, արևածաղկի և այլ ձիթատու կուլտուրաների հանձնումը պետությանը կոլխոզների և սովխոզների կողմից, կազմակերպելով հացահատիկի, մանավանդ կոմբայններից ստացվող հացահատիկի խնամքով զտումը, ինչպես նաև խոնավ ու թաց հացահատիկի ժամանակին չորացումը: Արգելել սահմանված ստանդարտից ավելի խոնավություն պարունակող բամբակի հումքի ընդունումը և մթերակայաններին ու գործարաններին հանձնելը:

3. Սահմանել, որ կոլխոզների և սովխոզների կողմից պետությանը հանձնվող հացահատիկի, ձիթատու կուլտուրաների և կարտոֆիլի առաջին իսկ պարտիաներից մարվում են առաջին հերթին պետությու-



նից կոլխոզների և սովխոզների ստացած վարկերը, ինչպես նաև կոլխոզների նախորդ տարիների այն պարտքերը, որոնք գոյացել են պարտադիր հանձնումների և ՄՏԿ-ների աշխատանքի նատուրալ վարձատրության գծով:

Հետագայում, կոլխոզների հանձնած հացահատիկի, ձիթատու կուլտուրաների և կարտոֆիլի յուրաքանչյուր պարտիայի կեսը մտցվում է պարտադիր հանձնումների հաշվի մեջ, իսկ մյուս կեսը՝ ՄՏԿ-ի աշխատանքի համար վճարվելիք նատուրալ վարձատրության հաշվի մեջ:

4. Սահմանել, որ կոլխոզների կողմից հացահատիկի, արևածաղկի և այլ կուլտուրաների հանձնումը՝ պարտադիր հանձնումների և ՄՏԿ-ների աշխատանքի նատուրալ վարձատրության կարգով (բացի կալսումից), ինչպես նաև կոլխոզների և անհատական տնտեսությունների կողմից պարտադիր հանձնումները պետք է կատարվեն ըստ կուլտուրաների՝ ճիշտ հանձնված պարտավորությունների ու ՄՏԿ-ների աշխատանքի համար ներկայացված հաշիվների համաձայն: Այնպիսի կուլտուրաներ, ինչպիսիք են ցորենը, բրինձը, լոբազգիները, արինջը, կորեկը, տարեկանը

և եգիպտացորենը հանձնվում են այն չափերով, որոնք սահմանված են հանձնումների համար տրված պարտավորություններով և ՄՏԿ-ների աշխատանքի վարձատրության հաշիվներով: Հացահատիկային յուրաքանչյուր մյուս կուլտուրայի փոխարեն թույլատրվում է հանձնել ամեն մի այլ կուլտուրա՝ հանձնողի ընտրությամբ: Ձիթատու կուլտուրաները թույլատրվում է փոխարինել ձիթատու կուլտուրաների մի տեսակը այլ տեսակով՝ փոխարինման համար սահմանված էկվիվալենտներով:

5. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին՝ միջոցներ ձեռք առնել, որ կոլխոզները բերքատվության կարգերին դասվելու ծանուցագրերը ՄՏԿ-ների դիրեկտորներին հանձնվեն ժամանակին, բայց ոչ ուշ քան բերքահավաքը սկսվելուց 15 օր հետո, իսկ ՄՏԿ-ների դիրեկտորներին պարտավորեցնել ապահովել ՄՏԿ-ների աշխատանքի համար հաշիվների հանձնումը կոլխոզներին ոչ ուշ քան կոլխոզները բերքատվության կարգին դասվելու ծանուցագիրը Մթերումների ժողկոմատի լիազորից ստացվելուց 5 օր հետո, իսկ հնձի, կոմբայնային բերքահավաքի, կալման, սերմացման, հացահատիկի փոխադրման



ծանուցագրերը՝ ոչ ուշ, քան աշխատանքը կատարվելուց 10 օր հետո: Նախազգուշացնել ՄՏԿ-ների դիրեկտորներին, որ նրանք անձամբ պատասխանատու են պետության առջև՝ հաշիվները ժամանակին հանձնելու և կոլխոզների կողմից մթերային վարձատրության վճարման վրա վերահսկելու համար:

6. Պարտավորեցնել մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների սովետական ու պարտիական կազմակերպություններին՝ օգնություն ցույց տալ մթերող օրգաններին պետությանը գյուղատնտեսական մթերքներ հանձնելու պարտավորությունները կոլխոզների կողմից արագորեն կատարելու ասպարեզում:

7. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին և Ցենտրոսոյուզին՝ հացամթերումը սկսվելուց առաջ Զագոտզեռնոյի յուրաքանչյուր գծային մթերակայանին կից կազմակերպել ու սարքավորել իջևաններ և թեյարաններ՝ հացահատիկ հանձնողների համար:

8. Պետության համար գյուղատնտեսական մթերքներ փոխադրելու ասպարեզում կոլխոզներին և սովխոզներին օգնություն ցույց տալու համար, թույլատրել մարդ

գործկոմներին, երկրգործկոմներին և ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին՝

ա) մթերումների ժամանակաշրջանի համար մոբիլիզացնել քաղաքացիական ձեռնարկությունների և հիմնարկների գործող ավտոտրանսպորտի մինչև 50 տոկոսը (բացառությամբ Սոյուզպտղատրանսի, Սովխոզտրանսի և շաքարի ճակնդեղի, բամբակի, վուշի ու կանեփի փոխադրությամբ զբաղված տրանսպորտի) և պաշտպանական ձեռնարկությունների ու շինարարությունների գործող ավտոտրանսպորտի մինչև 30 տոկոսը, սահմանելով մոբիլիզացված յուրաքանչյուր ավտոմեքենայի համար գյուղատնտեսական մթերքները պետական մթերակայանները փոխադրելու պարտադիր առաջադրանքներ, ելնելով փոխադրության 4·000 տոննա-կիլոմետր ծավալից մեկ և կես տոննանոց ավտոմեքենաներով:

Սահմանել, որ ձեռնարկություններն ու հիմնարկները հացահատիկ փոխադրելու համար մոբիլիզացված ավտոմեքենաներին հատկացնում են վառելանյութ՝ այդ ձեռնարկությունների և հիմնարկների համար սահմանված լիմիտների հաշվին.

բ) ձի ունեցող ձեռնարկությունների և



հիմնարկների համար սահմանել պետության գյուղատնտեսական մթերքներ փոխադրելու պարտադիր առաջադրանքներ՝ յուրաքանչյուր ձիու համար 50 տոննա-կիլոմետրի չափով:

9. Պարտավորեցնել ՍՍՌՄ Մթերումների ժողկոմատին և Սովխոզժողկոմատին՝ ապահովել մինչև հացամթերումների սկիզբը Սոյուզզագոտտրանսի և Սովխոզտրանսի բեռնատար ավտոմեքենաների վերականգնումն ու նորոգումը: Արգելել Սոյուզզագոտտրանսի և Սովխոզտրանսի ավտոմեքենաների օգտագործումը այնպիսի փոխադրումների համար, որոնք կապված չեն հացամթերումների հետ: Սահմանել, որ Սոյուզզագոտտրանսի և Սովխոզտրանսի այն բոլոր ավտոմեքենաները, որոնք զբաղված չեն հեռավոր վայրերից հացահատիկի փոխադրությամբ, ամբողջովին անցնում են հացահատիկի փոխադրմանը սովխոզներից:

10. Պարտավորեցնել մարզգործկոմներին, երկրգործկոմներին, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին՝ Մթերումների ժողկոմատի և Գետային Նավատորմի ժողկոմատի օրգանների հետ միասին, մինչև գյուղատնտեսա-

կան մթերքների մթերումները սկսվելը հաստատել փոքր գետերով մթերքներ. փոխադրելու պլանը և ապահովել նրա կատարումը:

11. Պարտավորեցնել ռեսպուբլիկաների ժողկոմսովետներին, երկրգործկոմներին և մարզգործկոմներին՝ վաճառելու և հանրային սննդի համար կարտոֆիլ ու բանջարեղեն ստացող բանմատակարարման բաժինները և առևտրական այլ կազմակերպություններն ամրացնել մթերակայաններին՝ իրենց փոխադրական միջոցներով կարտոֆիլ և բանջարեղեն ստանալու համար:

12. Պարտավորեցնել ՍՍՌՄ Մթերումների ժողկոմատին, Առևտրի ժողկոմատին, ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին, ՍՍՌՄ Տեքստիլ ժողկոմատին և Ցենտրոսոյուզին՝ մինչև գյուղատնտեսական մթերքների մթերումները սկսվելը լրիվին պատրաստել էլեվատորները, պահեստները, չորանոցները, ամբարները, տարան և կշեռքները, ապահովել մթերակայաններն անհրաժեշտ ինվենտարով և ընդունման ստացականների բլանկներով այն հաշվով, որ ապահովվի հացահատիկի, կարտոֆիլի, բանջարեղենի



և տեխնիկական կուլտուրաների ընդունումը գիշեր-ցերեկ:

13. Պարտավորեցնել ՍՍՌՄ Սովխոզժողկոմատին, ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին և ՍՍՌՄ Մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության ժողկոմատին՝ հանձնել Մթերման ժողկոմատին ժամանակավոր օգտագործման համար մինչև 1944 թվի օգոստոսի 1-ը հացահատիկ պահելու համար պիտանի պահեստներ հետևյալ ընդհանուր տարողությամբ. ՍՍՌՄ Սովխոզժողկոմատին 30 միլիոն փութ, ՍՍՌՄ Սննդարդժողկոմատին 6 միլիոն փութ և ՍՍՌՄ Մսեղենի ու կաթնեղենի ժողկոմատին 2 միլիոն փութ, պայմանով, որ այնուհետև հացահատիկը սովխոզի տրանսպորտով փոխադրվի Զագոտզեռնոյի գծային մթերակայանները: Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին՝ ՍՍՌՄ-ի Սովխոզների ժողկոմատի, ՍՍՌՄ-ի Սննդարդժողկոմատի և ՍՍՌՄ-ի Մսեղենի ու կաթնեղենի ժողկոմատի սովխոզներում կազմակերպել ժամանակավոր մթերակայաններ և այդ մթերակայաններում վերոհիշյալ սովխոզներից ընդունել 38 միլիոն փութ հացահատիկ: Պարտավորեցնել ՍՍՌՄ Սովխոզժողկոմատին, ՍՍՌՄ Սննդ-

արդժողկոմատին, ՍՍՌՄ Մսեղենի ու կաթնեղենի ժողկոմատին՝ մինչև սովխոզներից հացահատիկը փոխադրելու մոմենտը, Մթերման ժողկոմատի պահեստների վարիչների պահանջով, անհրաժեշտ թվով բանվորներ ու մեխանիզմներ տրամադրել սովխոզներում ընդունված պետական հացահատիկը չորացնելու և մաքրելու համար:

Կոլխոզների և սովխոզների կողմից պետությանը հացահատիկ, ձիթատու կուլտուրաների սերմեր հանձնելու գործը հեշտացնելու համար, պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին, նախ քան հացամթերումները սկսվելը, հիմնել Զագոտզեռնոյի մթերակայաններ երկաթուղային կայարաններում, կիսակայարաններում և նավամատույցներում: Պարտավորեցնել Հաղորդակցության ճանապարհների ժողկոմատին և Գետային նավատորմի ժողկոմատին՝ մինչև ս. թ. օգոստոսի 1-ը հանձնել Մթերումների ժողկոմատին ժամանակավոր օգտագործման համար կայարաններում, կիսակայարաններում և նավամատույցներում եղած պահեստները՝ մթերակայաններ կազմակերպելու համար:

15. Պարտավորեցնել Հաղորդակցության



ճանապարհների ժողկոմատին՝ հացահատիկ փոխադրելու համար պատրաստել ծածկ ունեցող վագոններ, հացահատիկային վահաններ, ապահովելով վագոններով ու վահաններով առաջին հերթին Ուկրաինայի, Հյուսիսային Կովկասի և Միջին Ասիայի երկաթուղիները:

16. Պարտավորեցնել Մթերումների ժողկոմատին՝ բանջարեղենի այն ամբողջ սերմացուն, որ հանձնում են սերմնաբուծական կոլխոզները մթերողներին կոնտրակտացիոն պայմանագրերի կարգով, մտցնել պետությանը պարտադիր կարգով բանջարանոցային բոլոր կուլտուրաները և կարտոֆիլը հանձնելու հաշվի մեջ, թույլ տալով բանջարանոցային այս կամ այն կուլտուրայի փոխարինումը ոչ նույնանուն այլ կուլտուրաների սերմերով:

Պարտավորեցնել ՍՍՌՄ Մթերման ժողկոմատին՝ կերի ու արմատապտուղների և բոստանային կուլտուրաների այն բոլոր սերմերը, որոնք հանձնում են սերմնաբուծական կոլխոզները մթերող օրգաններին կոնտրակտացիոն պայմանագրերի կարգով, մտցնել պետությանը պարտադիր կարգով հանձնվող կարտոֆիլի և խոտի հաշվի մեջ:

*Պարտավորեցնել Մթերման ժողկոմատին՝ ՍՍՌՄ Հողժողկոմատի հետ միասին, 10 օրում սահմանել բանջարեղենը, կարտոֆիլը և խոտը բանջարանոցային, բոստանային կուլտուրաների, կերի ու արմատապտուղների սերմերով փոխարինելու էկվիվալենտներ:*

17. *Պարտավորեցնել միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների մարզգործկոմներին, երկրգործկոմներին և ժողկոմսովետներին, պարտիայի մարզկոմներին և երկրկոմներին, միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին՝ օգնություն ցույց տալ Մթերման ժողկոմատին համալրելու էլևատորները, մթերակայանները դիրեկտորների կադրերով ու պահեստապետներով:*

## IV
## ՍԵՐՄՆԱԴԱՇՏԵՐԻ ԲԵՐՔԸ ՀԱՎԱՔԵԼՈՒ ԳԾՈՎ

1. *ՍՍՌՄ Ժողկոմսովետը և Համկ(բ)Պ Կենտկոմը նախազգուշացնում են սովետական և պարտիական օրգաններին, ՍՍՌՄ Հողժողկոմատին և ՍՍՌՄ Սովխոզժողկոմատին, որ անթույլատրելի է կրկնել նա-*



*խորդ տարվա սխալները, երբ տեղական հողային, սովետական և պարտիական օրգանների որոշ ղեկավարներ անփույթ վերաբերմունք էին ցույց տվել կոլխոզների և սովխոզների սերմնաբուծական տնտեսության, չէին կազմակերպել սերմնադաշտերի ժամանակին հատկացումը և բերքահավաքը, ինչպես նաև սերմացու հացահատիկի պահպանումը, որի հետևանքով մի շարք մարզերի կոլխոզներն ու սովխոզները իրենց չապահովեցին հացահատիկային և գյուղատնտեսական այլ կուլտուրաների սերմացուով:*

2. *Պարտավորեցնել տեղական սովետական, պարտիական և հողային օրգաններին, կոլխոզներին և սովխոզներին՝ բերքահավաքը սկսելուց 15 օր առաջ նատուրայով ստուգել չափված հողամասերը և կազմակերպել դրանց բերքի ժամանակին հավաքումն ու կալսումը: Ապահովել յուրաքանչյուր կոլխոզում սերմացուի ընդունումը պահեստապետի կողմից հատուկ ակտով, որի մեջ պետք է մատնանշված լինի սերմացուի քանակն ու որակը ըստ կուլտուրաների և սորտերի:*

*Արգելել կոլխոզներին և սովխոզներին՝ մինչև սերմֆոնդերը լրիվ կազմելը սերմ-*

նադաշտերի բերքը ծախել որևէ այլ նպատակով, բացի սերմայինից: Սերմնադաշտերի բերքը ոչ ըստ նպատակին օգտագործելու համար մեղավորներին և այդ բանին դրդող անձանց ենթարկել քրեական պատասխանատվության:

3. Սահմանել, որ կոլխոզների սերմնադաշտերի տարածությունը չպետք է ավելի մեծ լինի, քան համապատասխան կուլտուրաների փաստական ցանքի տարածության 12 տոկոսը աշնանացան ցորենի և տարեկանի համար, 13 տոկոսը վարսակի և գարու համար, 15 տոկոսը գարնանացան ցորենի համար, 18 տոկոսը արինջի համար, 8 տոկոսը եգիպտացորենի համար, 7 տոկոսը կորեկի համար, 15 տոկոսը հատիկաընդեղենի կուլտուրաների համար, 5 տոկոսը արևածաղկի և ձիթատու այլ կուլտուրաների համար, բացի դանդրավոր վուշից և արախիսից, 15 տոկոսը դանդրավոր վուշի և արախիսի համար, 10 տոկոսը սոյայի, ոզկանեփի և բրնձի համար, 15 տոկոսը կարտոֆիլի համար:

Գարնանացան ցորենի ցանքի տարածությունը էլ ավելի ընդարձակելու նպատակով, թույլատրել կոլխոզներին գարնանացան ցորենի սերմնադաշտերի չափը



հասցնել մինչև 1944 թվականի ցանքի փաստական տարածության 18 տոկոսը Կրասնոդարի, Ստավրոպոլի, Ալթայի, Կրասնոյարսկի, Խաբարովսկի, Պրիմորսկի երկրամասերում, Աստրախանի, Ստալինգրադի, Կույբիշևի, Պենզայի, Սարատովի, Չկալովի, Տամբովի, Ուլյանովսկի, Մոլոտովի, Սվերդլովսկի, Չելյաբինսկի, Կեմերովոյի, Կուրգանի, Նովոսիբիրսկի, Օմսկի, Չիտայի, Իրկուտսկի, Ռոստովի մարզերում, Թաթարական, Ուդմուրտական, Բաշկիրական, Մորդովայական, Կաբարդինյան, Հյուսիս-Օսեթինյան, Դաղստանյան, Բուրյաթ-Մոնղոլական, Մարիական Ավտոնոմ ՍՍՌ-ներում, Ղազախական ՍՍՌ-ում:

4. Կարտոֆիլի ցանքի տարածությունն էլ ավելի ընդարձակելու նպատակով, թույլատրել կոլխոզներին սերմնադաշտերի չափը հասցնել 1944 թվականի ցանքի փաստական տարածության 18 տոկոսին Վորոնեժի, Կույբիշևի, Պենզայի, Սարատովի, Տամբովի, Ուլյանովսկի, Մոլոտովի, Չկալովի մարզերում, Կրասնոդարի և Ստավրոպոլի երկրամասերում, Բաշկիրական, Մորդովայական, Դաղստանյան, Թաթարական, Ուդմուրտական Ավտոնոմ ՍՍՌ-ներում, Ջամբուլի, Հարավային Ղազախս-

տանի, Ակմոլինսկի, Արևմտյան Ղազախստանի, Կարագանդայի, Գուրևսկի մարզերում, Ղազախական ՍՍՌ-ում, Վրացական, Հայկական, Ադրբեջանական, Կիրգիզական ՍՍՌ-ներում:

Կարտոֆիլի ցանքերի տարածությունը վերականգնելու համար, սերմնադաշտերի չափը հասցնել կարտոֆիլի 1944 թվականի ցանքի փաստական տարածության 20 տոկոսին Վորոշիլովգրադի, Ստալինոյի, Օդեսայի, Նիկոլաևի և Խերսոնի մարզերում, Աստրախանի, Ռոստովի, Ստալինգրադի մարզերում, Ղրիմի Ավտոնոմ ՍՍՌ-ում, Ուզբեկական և Տաջիկական ՍՍՌ-ներում:

5. Որպես բացառություն շրջգործկոմի համաձայնությամբ թույլ տալ սերմնադաշտեր հատկացնել ամենաբերքատու ցանքերից այն կոլխոզներում և սովխոզներում, որտեղ տարերային աղետների պատճառով սերմնադաշտերից ստացվել է կոլխոզի և սովխոզի սերմի պահանջը չապահովող ցածր բերք:

6. Սահմանել, որ սերմացուի ֆոնդերը լրիվ կազմվելուց հետո, ավելի հացահատիկ մնալու դեպքում կոլխոզների և սովխոզների սերմնադաշտերից հավաքած հացահատիկի ավելցուկ մնալու դեպքում,



սերմնադաշտերի ավելորդ հացահատիկը կոլխոզներն ու սովխոզները կարող են օգտագործել պետության հանդեպ իրենց պարտավորությունները կատարելու համար, իսկ այդ պարտավորությունները կատարելուց հետո՝ այլ կարիքների համար:

7. Ի լրացումն շրջանային սերմատնտեսությունների համար գոյություն ունեցող արտոնությունների, շրջանային սերմատնտեսությունների կողմից պարտադիր հանձնումներից և նատուրալ վճարումներից դուրս Գոսսորտֆոնդին հանձնված յուրաքանչյուր 40 ֆունտ սերմացուի համար տալ 55 ֆունտ սովորական պարենային հացահատիկ Զագոտզեռնոյի այն պահեստներից, որոնք ամենից ավելի մոտ են շրջանային սերմատնտեսությանը:

8. Արգելել սերմնաբուծական կոլխոզների կոնտրակտացիայի ենթարկած հողամասից բանջարանոցային կուլտուրաների և կերի արմատապտուղների սերմանոցները օգտագործել որևէ այլ նպատակով, բացի սերմայինից, մինչև բազմամյա կուլտուրաների սերմանոցներ հիմնելու պլանի կատարվելը կամ միամյա կուլտուրաների

(պամիդոր, վարունգ և այլն) սերմացուն հանձնելը:

Պարտավորեցնել ոչ սերմաբուծական կոլխոզներին, որոնք ունեն բանջարեղենի և կերի արմատապտուղների ցանքեր, ապահովել իրենց բանջարանոցային կուլտուրաների և կերի արմատապտուղների իրենց մոտ հասունացող սերմերով՝ 1945 թվականին ցանք կատարելու համար և ժամանակին բերքահավաքից անմիջապես հետո, պահել մայր-արմատներ՝ 1945 թվականի գարնանը տնկելու համար:

***

Սույն որոշումը քննարկել գյուղական վայրերի պարտիական, կոմերիտական ժողովներում, կոլխոզնիկների, սովխոզների ու ՄՏԿ-ների բանվորների, մասնագետների և ծառայողների ընդհանուր ժողովներում, ընդունելով համապատասխան որոշումներ՝ բերքահավաքն ու գյուղատնտեսական մթերքների մթերումը նախապատրաստելու և անցկացնելու մասին:

---



## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

### ՀՂԻ ԿԱՆԱՆՑ, ԲԱԶՄԱԶԱՎԱԿ ԵՎ ՄԻԱՅՆԱԿ ՄԱՅՐԵՐԻ ՊԵՏԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՎԵԼԱՑՆԵԼՈՒ, ՄԱՅՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒԹՅՈՒՆՆ ՈՒԺԵՂԱՑՆԵԼՈՒ. «ՀԵՐՈՍՈՒՀԻ-ՄԱՅՐ» ՊԱՏՎԱՎՈՐ ԿՈՉՈՒՄ ՍԱՀՄԱՆԵԼՈՒ, «ՄԱՅՐԱԿԱՆ ՓԱՌՔ» ՇՔԱՆՇԱՆ ԵՎ «ՄԱՅՐՈՒԹՅԱՆ ՄԵԴԱԼ» ՄԵԴԱԼ ՀԻՄՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երեխաների և մայրերի նկատմամբ և ընտանիքի ամրապնդման հոգատարությունը միշտ էլ եղել է Սովետական պետության կարևորագույն խնդիրներից մեկը: Պաշտպանելով մոր և երեխայի շահերը, պետությունը նյութական մեծ օգնություն է ցույց տալիս հղի կանանց ու մայրերին՝ երեխաների պահպանման ու դաստիարակության համար: Պատերազմի ժամանակ և պատերազմից հետո, երբ շատ ընտանիքների համար կլինեն ավելի զգալի նյու-

թական դժվարությունները, պահանջվում է է՛լ ավելի ընդլայնել պետական օգնության միջոցառումները:

Հղի կանանց, բազմազավակ և միայնակ մայրերին ցույց տրվող նյութական օգնությունն ավելացնելու, բազմազավակությունը խրախուսելու և մայրության ու մանկության պահպանությունն ուժեղացնելու նպատակով Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի Նախագահությունը որոշում է.

## I. ԲԱԶՄԱԶԱՎԱԿ ԵՎ ՄԻԱՅՆԱԿ ՄԱՅՐԵՐԻՆ ՑՈՒՅՑ ՏՐՎՈՂ ՊԵՏԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՎԵԼԱՑՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

1. Սահմանել, որ 6 երեխա ունեցող բազմազավակ մայրերին 7-րդ և յուրաքանչյուր հետևյալ երեխա ծնվելու ժամանակ պետական նպաստ տալու ներկայումս գոյություն ունեցող կարգի փոխարեն պետական նպաստ տրվում է երկու երեխա ունեցող բազմազավակ մայրերին (ամուսին ունեցող և այրի)՝ երրորդ և յուրաքանչյուր հետևյալ երեխայի ծնվելու ժամանակ:



2. Բազմազավակ մայրերին պետական նպաստի վճարումը կատարել հետևյալ կարգով և չափով.

| | Միանվագ | Ամսական |
|---|---|---|
| Երկու երեխա ունեցող մայրերին, երրորդ երեխայի ծնվելու ժամանակ | 400 ռուբ. | — |
| Երեք երեխա ունեցող մայրերին, չորրորդ երեխայի ծնվելու ժամանակ | 1.300 » | 80 ռուբ. |
| Չորս երեխա ունեցող մայրերին, հինգերորդ երեխայի ծնվելու ժամանակ | 1.700 » | 120 » |
| Հինգ երեխա ունեցող մայրերին, վեցերորդ երեխայի ծնվելու ժամանակ | 2.000 » | 140 » |
| Վեց երեխա ունեցող մայրերին, յոթերորդ երեխայի ծնվելու ժամանակ | 2.500 » | 200 » |
| Յոթ երեխա ունեցող մայրերին, ութերորդ | | |

| | Միանվագ | | Ամսական | |
|---|---|---|---|---|
| երեխայի ծնվելու ժամանակ | 2.500 | » | 200 | » |
| Ութ երեխա ունեցող մայրերին, իններորդ երեխայի ծնվելու ժամանակ | 3.500 | » | 250 | » |
| Ինն երեխա ունեցող մայրերին, տասներորդ երեխայի ծնվելու ժամանակ | 3.500 | » | 250 | » |
| Տաս երեխա ունեցող մայրերին, յուրաքանչյուր հետևյալ երեխայի ծնունդի ժամանակ | 5.000 | » | 300 | » |

Բազմազավակ մայրերին ամսական նպաստ վճարվում է սկսած երեխայի ծնվելու երկրորդ տարվանից մինչև երեխայի հինգ տարեկան դառնալը:

Սույն Հրամանագրի հրատարակման օրը երեք, չորս, հինգ և վեց երեխա ունեցող մայրերին սույն հոդվածով նախատեսված նպաստը վճարվում է սույն Հրամանագրի հրատարակումից հետո ծնված յուրաքանչյուր երեխայի համար:



Սույն Հրամանագրի հրատարակման օրը յոթ և ավելի երեխա ունեցող մայրերը պահպանում են բազմազավակության համար նպաստ ստանալու իրավունքը այն կարգով ու չափով, որոնք սահմանված են ՍՍՌՄ Կենտգործկոմի և Ժողկոմսովետի 1936 թվի հունիսի 27-ի որոշմամբ, այսինքն յոթերորդ, ութերորդ, իններորդ և տասներորդ երեխայի համար տարեկան 2.000-ական ռուբլի՝ երեխայի ծնվելու օրվանից 5 տարվա ընթացքում, տասնմեկերորդ և հետևյալ յուրաքանչյուր երեխայի համար միանվագ 5.000 ռուբլի և ամեն տարի 3.000-ական ռուբլի՝ չորս տարվա ընթացքում, սկսած երեխայի ծնվելու երկրորդ տարվանից: Սույն Հրամանագրի հրատարակումից հետո ծնված յուրաքանչյուր հետևյալ երեխայի համար նպաստ վճարվում է Հրամանագրի սույն հոդվածում սահմանված կարգով ու չափով:

Բազմազավակության պետական նպաստը որոշելու ժամանակ հաշվի են առնվում Հայրենական պատերազմի ճակատներում զոհված կամ անհայտ կորած զավակները:

3. Սահմանել պետական նպաստ միայ—

նակ մայրերին (ամուսնության մեջ չգտնվող), սույն Հրամանագրի հրատարակումից հետո ծնված երեխաների պահպանման ու դաստիարակության համար, հետևյալ չափերով. ամսական 100 ռուբլի մեկ երեխայի համար, 150 ռուբլի՝ երկու երեխայի համար և 200 ռուբլի՝ երեք և ավելի երեխաների համար:

Միայնակ մայրերին պետական նպաստ վճարվում է մինչև երեխաների 12 տարեկան դառնալը:

Երեք և ավելի երեխա ունեցող միայնակ մայրերին սույն հոդվածով նախատեսված պետական նպաստը վճարվում է ի լրացումն բազմազավակության նպաստի, որն տացվում է համապատասխան սույն Հրամանագրի 2-րդ հոդվածի:

Միայնակ մոր ամուսնանալու դեպքում սույն հոդվածով նախատեսված նպաստի իրավունքը պահպանվում է:

Մինչև սույն Հրամանագրի հրատարակումը ծնված երեխաների համար ալիմենտ ստացող մայրերը պահպանում են ալիմենտ ստանալու իրենց իրավունքը մինչև երեխայի չափահաս դառնալը և սույն հոդվածով նախատեսված նպաստը չեն ստանում:

1944 թվին, մինչև սույն Հրամանագրի



հրատարակումը ծնված երեխաների մայրերը, որոնք չեն ստանում նրանց համար ալիմենտներ, իրավունք ունեն ստանալ սույն հոդվածով նախատեսված նպաստ:

4. Եթե միայնակ մայրը ցանկանում է դաստիարակության համար մանկական հիմնարկում տեղավորել իր ծնած երեխան, մանկական հիմնարկը պարտավոր է երեխան ընդունել ամբողջովին պետության հաշվին պահելու և դաստիարակելու համար:

Երեխայի մայրը իրավունք ունի մանկական հիմնարկից ետ վերցնելու իր երեխան դաստիարակության համար:

Երեխայի մանկական հիմնարկում գտնվելու ժամանակ երեխայի համար հատանելիք պետական նպաստը չի վճարվում:

5. Սոցիալական ապահովագրության միջոցներից և կոոպերատիվ արտելների փոխադարձ օգնության դրամարկղից նորածին երեխայի համար տրվող միանվագ նպաստի չափը 45 ռուբլուց ավելացնել 120 ռուբլու: Սահմանել, որ նշված գումարի դիմաց պետք է ապահովվի նորածին երեխայի համար սպիտակեղենի կոմպլեկտի վաճառումը մայրերին:

## II. ՀՂԻ ԿԱՆԱՆՑ, ՄԱՅՐԵՐԻ ԱՐՏՈՆՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՎԵԼԱՑՆԵԼՈՒ ԵՎ ՄԱՅՐՈՒԹՅԱՆ ՈՒ ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱՐԿՆԵՐԻ ՑԱՆՑԸ ԸՆԴԼԱՅՆԵԼՈՒ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

6. *Հղիության և հետծննդյան արձակուրդը բանվորուհիների ու ծառայող կանանց համար 63 օրացուցային օրից ավելացնել մինչև 77 օրացուցային օրի, սահմանելով արձակուրդի տևողությունը՝ մինչև ծնունդ 35 օրացուցային օր և ծնունդից հետո՝ 42 օրացուցային օր, որ ժամանակամիջոցի համար պետական հաշվից նպաստ տալով առաջուց սահմանված չափերով: Աննորմալ ծնունդի և երկվորյակ ծնվելու դեպքում ծնունդից հետո արձակուրդ է տրվում 56 օրացուցային օր տևողությամբ:*

*Պարտավորեցնել ձեռնարկությունների և հիմնարկությունների ղեկավարներին՝ հղի կանանց հերթական արձակուրդ տալ այն համարեցնելով հղիության և հետծննդյան արձակուրդին:*

7. *Հղի կանանց, սկսած հղիության չորրորդ ամսից, ձեռնարկություններում և հիմնարկություններում մասնակից չդարձնել արտաժամյա աշխատանքի, իսկ ծծկեր երեխա ունեցող կանանց թույլ չտալ գիշերային աշխատանքի՝ երեխային կերակրելու ժամանակաշրջանում:*

8. *Կրկնակի ավելացնել հղի կանանց լրացուցիչ պարենային օրապահիկի նորմաները՝ սկսած հղիության վեցերորդ ամսից և կերակրող մայրերին՝ կերակրման 4 ամիսների ընթացքում:*

9. *Պարտավորեցնել ձեռնարկությունների և հիմնարկությունների ղեկավարներին՝ հղի կանանց և կերակրող մայրերին օգնություն ցույց տալ օժանդակ տնտեսություններից՝ նրանց լրացուցիչ մթերքներ տրամադրելու միջոցով:*

10. *Մանկապարտեզներում և մանկամսուրներում երեխաներին տեղավորելու վճարից 50 տոկոսով ազատել այն ծնողներին՝*

*որոնք ունեն երեք երեխա և ստանում են ամսական մինչև 400 ռուբլի աշխատավարձ.*

*որոնք ունեն չորս երեխա և ամսական ստանում են մինչև 600 ռուբլի աշխատավարձ,*

որոնք ունեն հինգ և ավելի երեխա, անկախ աշխատավարձի չափից:

11. Հանձնարարել ՍՍՌՄ ժողովրդական կոմիսարների Սովետին.

ա) Հաստատել ռեսպուբլիկաներում և մարզերում լրացուցիչ կերպով մոր ու մանկան տներ, ինչպես նաև կարիքավոր հղի միայնակ կանանց և թուլացած կերակրող մայրերի համար հանգստյան հատուկ տներ կազմակերպելու պլանը, այդ տներում օգտագործելով հանգստացողների աշխատանքը՝ նրանց ուժի ներածի չափով.

բ) Հաստատել մանկական հիմնարկությունների ցանցը ըստ ժողկոմատների ու գերատեսչությունների ընդլայնելու պլանը՝ սպասարկման կարիք ունեցող բոլոր երեխաներին լիովին ընդգրկելու հաշվով, նախատեսելով մանկական կոնսուլտացիաների ու կաթնեղենի խոհանոցների ցանցի ընդլայնումը, ծծկեր երեխաների համար մանկամսուրների, մանկապարտեզներին կից երեկոյան խմբերի և ծնունդին օժանդակող հիմնարկությունների կազմակերպումը՝ գերմանական զավթիչներից ազատագրված շրջաններում.

գ) Նախատեսել մանկամսուրների, մանկապարտեզների, ծծկեր երեխաների կերակրման սենյակների և կանանց անձնական առողջապահության սենյակների պարտադիր կազմակերպում ձեռնարկություններում ու հիմնարկություններում, մասսայաբար կիրառելով կանանց աշխատանքը.



դ) պարտավորեցնել ժողկոմատներին՝ արդյունաբերական շինարարության նախագծերում նախատեսել մանկական հիմնարկությունների (մսուրներ, մանկապարտեզներ, մոր և մանկան սենյակներ) շինարարություն, որոնք լիովին ընդգրկեն տվյալ ձեռնարկության բանվորուհիների և ծառայողների սպասարկման կարիք ունեցող երեխաներին.

ե) Հաստատել մանկական հագուստեղենի, կոշկեղենի, մանկական առողջապահության ու սանիտարիայի առարկաների և մանկական գործածության այլ առարկաների արտադրությունը զգալիորեն ընդլայնելու միջոցառումները, ինչպես մանկական հիմնարկությունների համար, այնպես էլ բնակչության վաճառելու համար, ինչպես նաև ընդլայնել մանկական հագուստեղենի նորոգման արհեստանոցների և մոր ու մանկան խանութների ցանցը:

## III. «ՄԱՅՐՈՒԹՅԱՆ ՄԵԴԱԼ» ՄԵԴԱԼ ԵՎ «ՄԱՅՐԱԿԱՆ ՓԱՌՔ» ՇՔԱՆՇԱՆ ՀԻՄՆԵԼՈՒ ՈՒ «ՀԵՐՈՍՈՒՀԻ-ՄԱՅՐ» ՊԱՏՎԱՎՈՐ ԿՈՉՈՒՄ ՍԱՀՄԱՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

12. *Հիմնել առաջին և երկրորդ աստիճանի «Մայրության մեդալ» մեդալ՝ պարգևատրելու համար այն մայրերին, որոնք ծնել ու դաստիարակել են՝*

*հինգ երեխա՝ երկրորդ աստիճանի մեդալ.*

*վեց երեխա՝ առաջին աստիճանի մեդալ։*

13. *Հիմնել առաջին, երկրորդ և երրորդ աստիճանի «Մայրական փառք» շքանշան, պարգևատրելու համար այն մայրերին, որոնք ծնել և դաստիարակել են՝*

*յոթ երեխա՝ երրորդ աստիճանի շքանշան.*

*ութ երեխա՝ երկրորդ աստիճանի շքանշան.*

*ինն երեխա՝ առաջին աստիճանի շքանշան։*

14. *Սահմանել, որ 10 երեխա ծնած ու դաստիարակած մայրերին շնորհվում է «Հերոսուհի-մայր» պատվավոր կոչում և հանձնվում է «Հերոսուհի-մայր» շքանշան*



*ու ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության պատվոգիր։*

15. *«Մայրական փառք» շքանշանով և «Մայրության մեդալ» մեդալով պարգևատրումը և «Հերոսուհի-մայր» պատվավոր կոչման շնորհումը կատարվում է այն ժամանակ, երբ վերջին երեխան հասնում է մեկ տարեկան հասակի և երբ ողջ են այդ մոր մնացած երեխաները։*

*Մորը պարգևատրելու ժամանակ հաշվի են առնվում նաև այն զավակները, որոնք զոհվել կամ անհայտ կորել են Հայրենական պատերազմի ճակատներում։*

## IV. ԱՄՈՒՐԻ, ՄԻԱՅՆԱԿ ԵՎ ՍԱԿԱՎԱՆԴԱՄ ԸՆՏԱՆԻՔ ՈՒՆԵՑՈՂ ՍՍՌՄ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՀԱՐԿԻ ՄԱՍԻՆ

16. *Ի փոփոխումն «Ամուրի, միայնակ և անզավակ ՍՍՌՄ քաղաքացիների հարկի մասին» ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության* 1941 *թվի նոյեմբերի* 21-*ի Հրամանագրի, սահմանել, որ հարկ վճարում են երեխա չունեցող քաղաքացիները և մեկ ու երկու երեխա ունեցող քաղաքացիները՝ տղամարդիկ* 20-*ից մինչև* 50 *տա-*

րեկան հասակում և կանայք 20-ից մինչև 45 տարեկան հասակում։

17. Հարկը գանձել հետևյալ չափերով.

ա) եկամտահարկի ենթարկվող քաղաքացիներից, երեխա չլինելու դեպքում, նրանց եկամուտի 6 տոկոսի չափով, մեկ երեխայի առկայության դեպքում՝ նրանց եկամտի մեկ տոկոսի և երկու երեխայի առկայության դեպքում՝ կես տոկոսի չափով.

բ) կոլխոզնիկներից, մենատնտեսներից և մյուս քաղաքացիներից, որոնք մտնում են գյուղատնտեսական հարկի ենթակա տնտեսությունների կազմի մեջ, երեխա չլինելու դեպքում, տարեկան 150 ռուբլի, մեկ երեխայի առկայության դեպքում՝ տարեկան 50 ռուբլի և երկու երեխայի առկայության դեպքում՝ տարեկան 25 ռուբլի.

գ) մնացած քաղաքացիներից, երեխա չլինելու դեպքում՝ տարեկան 90 ռուբլի, մեկ երեխայի առկայության դեպքում՝ տարեկան 30 ռուբլի, երկու երեխայի առկայության դեպքում՝ տարեկան 15 ռուբլի։

18. Հարկումից ազատել



ա) շարքային, սերժանտական և ավագ կազմի զինծառայողներին.

բ) գործող բանակի և գործող նավատորմի կազմի մեջ մտնող զորամասերի ու հիմնարկությունների սպայական կազմի զինծառայողներին.

գ) սույն հոդվածի «ա» և «բ» կետերում նշված զինծառայողների կանանց.

դ) այն կանանց, որոնք պետությունից նպաստ կամ թոշակ են ստանում երեխաների պահպանման համար.

ե) այն քաղաքացիներին, որոնց զավակները զոհվել կամ անհայտ կորել են Հայրենական պատերազմի ճակատներում.

զ) միջնակարգ ու բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորող աղամարդկանց ու կանանց՝ մինչև 25 տարեկան հասակում.

է) առաջին ու երկրորդ խմբի հաշմանդամներին։

## V. ԱՄՈՒՍՆՈՒԹՅԱՆ, ԸՆՏԱՆԻՔԻ ԵՎ ԽՆԱՄԱԿԱԼՈՒԹՅԱՆ ՕՐԵՆՔԻ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

19. Սահմանել, որ միայն արձանագրըված ամուսնությունն է առաջ բերում ամուսնության, ընտանիքի ու խնամակալու-

թյան մասին միութենական ռեսպուբլիկաների օրենսգրքերով նախատեսված ամուսինների իրավունքներն ու պարտականությունները:

Այն անձինք, որոնք մինչև սույն Հրամանագրի հրատարակումը եղել են ամուսնական փաստական հարաբերությունների մեջ, կարող են իրենց հարաբերությունները ձևակերպել ամուսնությունը արձանագրելու միջոցով, նշելով փաստական համատեղ կյանքի ժամանակամիջոցը:

20. Վերացնել գոյություն ունեցող այն իրավունքը, երբ մայրը դատարան է դիմում հայրությունը որոշելու և ալիմենտ գանձելու հայցով այն երեխայի պահպանման համար, որը ծնված է այնպիսի անձնավորությունից, որի հետ նա արձանագրված ամուսնության մեջ չի գտնվում:

21. Սահմանել, որ քաղաքացիական կացության ակտերի գրանցման օրգաններում արձանագրված ամուսնության մեջ չգտնըվող մոր երեխայի ծնունդը ցուցակագրելու ժամանակ երեխան գրանցվում է մոր ազգանունով և նրան հայրանուն է տրվում համաձայն մոր ցուցումի:

22. Անձնագրերում անպայման արձանա-



գրված ամուսնության գրանցում կատարել, նշելով ամուսնու ազգանունը, անունը, հայրանունը և ծննդյան թիվը, ամուսնության արձանագրության վայրն ու ժամանակը:

23. Սահմանել, որ ապահարզանը կատարվում է հրապարակով, դատարանի միջոցով: Ամուսինների խնդրանքով ապահարզանի գործը անհրաժեշտ դեպքերում, դատարանի որոշմամբ, կարող է լսվել դատական դռնփակ նիստում:

24. Ամուսնալուծության դատավարություն հարուցելու համար սահմանել հետևյալ պահանջների պարտադիր պահպանում.

ա) դիմում ներկայացնել դատարանին ամուսնալուծության ցանկության մասին, նշելով ապահարզանի մոտիվները, ինչպես նաև մյուս ամուսնու ազգանունը, անունը, հայրանունը, ծննդյան թիվը և բնակության վայրը: Ամուսնալուծության դիմում տալու ժամանակ գանձվում է 100 ռուբլի.

բ) ամուսնուն կանչել դատարան՝ ծանոթանալու համար մյուս ամուսնու տված ապահարզանի դիմումի հետ և նախօրոք

պարզելու ապահարզանի մոտիվները, ինչպես նաև դատավարության ժամանակ կանչվելիք վկաներին հաստատելու համար.

գ) տեղական թերթում հայտարարություն հրապարակել ապահարզանի դատավարություն հարուցելու մասին, հայտարարության արժեքը գանձելով ամուսնալուծության դիմում ներկայացնող ամուսնու հաշվին:

25. Ժողովրդական դատարանը պարտավոր է պարզել ամուսնալուծության դիմում տալու պատճառները և միջոցներ ձեռք առնել ամուսիններին հաշտեցնելու համար, որի համար պետք է անպայման կանչվեն բաժանվող երկու ամուսինները, իսկ անհրաժեշտության դեպքում նաև վկաները:

Այն դեպքում, եթե ժողովրդական դատարանում հաշտեցում տեղի չի ունենում, հայցվորն իրավունք ունի ամուսնալուծության համար դիմելու վերադաս դատարանին:

Սահմանել, որ ամուսնալուծության վճիռ կարող են կայացնել մարզային, երկրամասային, օկրուգային, քաղաքային դատարանը կամ թե միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկայի գերագույն դատարանը:



26. Մարզային, երկրամասային, օկրուգային, քաղաքային դատարանը կամ միութենական ու ավտոնոմ ռեսպուբլիկաների գերագույն դատարանը, երբ գտնեն, որ անհրաժեշտ է լուծել ամուսնությունը՝

ա) որոշելու են, թե բաժանվող ամուսիններից ո՛ւմ մոտ և երեխաներից ո՛րն է մնալու, ինչպես նաև ծնողներից ո՛րը և ի՛նչ չափով է կրելու երեխաների պահպանման ծախսերը.

բ) որոշելու են գույքը բաժանվող ամուսինների միջև նատուրայով կամ ըստ բաժինների բաժանելու կարգը.

գ) բաժանված ամուսիններից յուրաքանչյուրին, նրանց ցանկությամբ, տալու են մինչ ամուսնություն ունեցած ազգանունը:

27. Կայացած դատավճռի հիման վրա քաղաքացիական կացության ակտերի գրանցման օրգանները ապահարզանի վկայական են դուրս գրում, որը տալու ժամանակ ապահարզանի նշում են կատարում յուրաքանչյուր ամուսնու անձնագրում, և մեկ կամ երկու ամուսիններից, դատարանի որոշմամբ, գանձելու են 500-ից մինչև 2.000 ռուբլի:

***

28. Հանձնարարել միութենական ռեսպուբլիկաների գերագույն սովետներին, սույն Հրամանագրի համապատասխան անհրաժեշտ փոփոխություններ մտցնել միութենական ռեսպուբլիկաների օրենսդրության մեջ:

29. Հանձնարարել ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետին՝ հաստատել հղի կանանց, բազմազավակ և միայնակ մայրերին սույն Հրամանագրի համապատասխան նպաստ նշանակելու և տալու կարգի կանոնադրությունը:

30. Հանձնարարել ՍՍՌՄ Ժողովրդական Կոմիսարների Սովետին՝ հաստատել քաղաքացիական կացության ակտերի (ամուսնության, ծննդի և մյուս ակտերի) գրանցման գործը կարգավորելու միջոցառումները, նախատեսելով արձանագրություն կատարելու հանդիսավոր կարգի ըստեղծում, այդ բանի համար առանձնացնել համապատասխան շենքեր ու կահավորում, քաղաքացիների ձեռքը տալ պատշաճ ձևավորված փաստաթղթեր:

31. Դատախազության օրգաններին՝ քրեական գործով օրենսդրության համապատասխան պատասխանատվության կան-



չել ապօրինի աբորտներ կատարելու, կանանց աբորտ անել հարկադրելու, մայր կնոջ արժանապատվությունը վիրավորելու և նվաստացնելու, երեխաներ պահելու համար չարամտորեն ալիմենտ չվճարելու մեջ մեղավոր անձանց:

32. Ուժը կորցրած համարել՝

ա) «Աբորտներն արգելելու, ծննդականների նյութական օգնությունն ավելացնելու, բազմանդամ ընտանիքներին պետօգնություն սահմանելու, ծննդատների, մանկամսուրների և մանկապարտեզների ցանցը ընդարձակելու, ալիմենտը չվճարելու համար քրեական պատիժն ուժեղացնելու և ապահարզանի օրենսդրության մեջ մի քանի փոփոխություններ մտցնելու մասին» ՍՍՌՄ Կենտգործկոմի ու Ժողկոմսովետի 1936 թվի հունիսի 27-ի որոշման 5-րդ, 8-րդ. 10-րդ, 27-րդ և 28-րդ հոդվածները (ՍՍՌՄ Օրենքների ժողովածու, 1936 թ. № 34, էջ՝ 309).

բ) «Բազմազավակ մայրերին նպաստ տալու կարգի մասին» ՍՍՌՄ Կենտգործկոմի և Ժողկոմսովետի 1936 թվի նոյեմբերի 14-ի որոշումը (ՍՍՌՄ Օրենքների ժողովածու, 1936 թ. № 59, էջ՝ 448):

դ) «Աշխատանքային կարգապահությունը կարգավորելու, պետական ապահովագրության պրակտիկան բարելավելու և այդ գործում եղած չարաշահումների դեմ պայքարելու միջոցառումների մասին» ՍՍՌՄ Ժողկոմսովետի, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՀԱՄԿԽ-ի 1938 թվի դեկտեմբերի 28-ի որոշման 14-րդ հոդվածը (ՍՍՌՄ կառավարության որոշումների ժողովածու, 1939 թ. № 1, էջ 1)։

ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ՝ Մ. ԿԱԼԻՆԻՆ

ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ՝ Ա. ԳՈՐԿԻՆ

Մոսկվա, Կրեմլ, 8 հուլիսի 1941 թ.

---



Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 00784 պատվեր 686 տիրաժ 5000

ՀՍՍՌ Ժողկոմսովետին կից Թերթերի և ամսագրերի տպարան. Երևան, 1944 թ.